

Սկսվեցին ամառային արձակուրդները։ Շատ դպրոցականներ մեկնում են ամառանոց, շատերը պիոներական ճամբարներում հանգստանալու։

Ճամբարում, թե գյուղում, հանգստի տանը, թե ծովափին անշուշտ ձեզ համար, երեխանե՛ր, շատ հետաքրքիր կանցնի ժամանակը և զով ու ծաղկավետ բնության գրկում դուք կխաղաք այնքան, ինչքան սիրտներդ ուզի։

Դե, ձեզանից ո՞վ չի սիրում խաղալ... Հենց դրա համար էլ ձեզ մի շատ հետաքրքիր խաղ կսովորեցնենք, որ կոչվում է «Ծեր անտառի բանալին»։

Այս խաղը պետք է կազմակերպել անտառում, որտեղ կլինեն տարբեր տեսակի ծառեր, ծաղիկներ, նույնիսկ ծորակներ և առվակներ։ Խաղին կարող են մասնակցել ճամբարի բոլոր պիոներները, ինչպես նաև մեկ կամ երկու ջոկատ։

## ԻՆՉՊԵՍ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՎԵԼ ԽԱՂԻՆ

Անտառում 200—300 մետր հեռավորության վրա նախօրոք առանձնացվում են խաղի համար նախատեսված հատուկ տեղամասեր։ Այդ տեղամասերին պետք է անուններ տալ. այսպես օրինակ՝ «Ծաղկի բացատ», «Հին կոճղ», «Կորիզ», «Տերևիկ», «Սպիտակ սունկ» և այլն։

Թե որտեղ են գտնըվում այդ տեղամասերը, երեխաները նախօրոք չպետք է իմանան, այլ խաղի ընթացքում պիտի փընտրեն ու գտնեն։ Յուրաքանչյուր այդպիսի տեղամասում գտնվում են նրա տերերը՝ երկու կամ երեք պիոներներ զարդարված համապատասխան հագուստներով։ Նրանք նախօրոք կազմում են զանազան բույսերի հավաքածուներ, այսպես՝ «Ծաղկե բացատ» տեղամասի համար անհրաժեշտ է պատրաստել դաշտային ծաղիկների հավաքածու, «Հին կոճղ» տեղամասում լավ կլինի հավաքել տարբեր ծառերի կեղևներ, «Կորիզում»՝ զանազան կորիզներ և այլն։

Նախատեսնված խաղավայրում, մեկ տեղամասից մյուսը գնալու ժամանակ, երեխաները իրենց ճանապարհին կհանդիպեն «Ճանճասպան» սունկերի հագուստով զարդարված պիոներների։

Խաղացողներին օգնելու նպատակով, ճամբարում նախօրոք կարելի է կազմել զանազան հավաքածուներ, որոնց միջոցով երեխաները կծանոթանան բույսերի, տերևների, ծաղիկների, սունկերի, սերմերի տեսակներին։ Այդ, այսպես կոչված, «տեղեկատուն» կարող է աշխատել նաև խաղի ընթացքում։

## ԻՆՉՊԵՍ ՍԿՍԵԼ ԽԱՂԸ

Առավոտյան տողանի ժամանակ, խաղի ղեկավարը պիոներներին մանրամասն բացատրում է խաղի բովանդակությունը, որից հետո մեծ թղթի վրա գըրում են հայտարարություն և աչքի ընկնող վայրում փակցընում։

«Երեխանե՛ր, փնտրեք «Ծեր անտառի բանալին»։ Նա, ով կըգտնի, անտառում երբեք չի մոլորվի, նրան հասկանալի կլինեն և թռչունների ճռվողյունը, և խոնավ հողի վրա եղած թարմ հետքերը։ Միայն կախարդական բանալին գտնելը այնքան էլ հեշտ չէ։

Նախ և առաջ պետք է փընտրել «Ծաղկի բացատը»։ Այնտեղ ձեզ մի քանի հարցեր կտան և, եթե դուք ճիշտ պատասխանեք, այն ժամանակ ձեզ կթույլատրեն փնտրել «Հին կոճղը», այդտեղից դուք կճանապարհվեք գտնելու «Կորիզը», հետո «Տերևիկ» տեղամասը, որից հետո, վերջապես, կհասնեք «Սպիտակ սունկի» մոտ։

Եթե անտառում մոլորվեք, հարցրեք «Ճանճասպան» սունկերին, նրանք ձեզ ճանապարհը ցույց կտան։ Նա, ով կգտնի կախարդական բանալին և կբերի

# ԾԵՐ ԱՆՏԱՌԻ



ՀՈՒԼԻՍ
№ 7 1961 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
33-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Կարմիր բացատը»՝ նվեր կստանա «Ալվան ծաղիկը»։

Կեսօրից հետո փողի ազդանշանով սկսվում է խաղը և երկու ժամից հետո կրկին փողի ձայնը ազդարարում է խաղի ավարտը»։

## ԻՆՉՊԵՍ Է ԸՆԹԱՆՈՒՄ ԽԱՂԸ

Առաջին հերթին պետք է փընտրել «Ծաղկի բացատը»։ Նրա տերերը խաղացողներին ցույց են տալիս իրենց կազմած դաշտային ծաղիկների հավաքածուն. ծաղիկների թիվը 10-ից պակաս չպետք է լինի։ Եթե խաղին մասնակցող պիոները գտնի բոլոր ծաղիկների անունները, ապա այդ դեպքում, նրան իրավունք կտրվի շարունակել ճանապարհը։ Եթե ոչ, նա դուրս կգա խաղից։

Ստանալով հատուկ տոմսակ, որի վրա ծաղիկներ են նկարված, նա արդեն կարող է գնալ և փնտրել «Հին կոճղը»։ Այդտեղ ներկայացնելով իր տոմսակը, նա պատասխանում է տրված հարցերին և նույն ձևով շարունակաբար անցնում բոլոր նախատեսնված տեղամասերը։

Եթե խաղացողը մոլորվի անտառում, ապա նրան օգնության կգան «ճանճասպան» սունկերը։ Ճանապարհը նրանք ցույց կտան միայն մի պայմանով, եթե երեխան պատասխանի ամենաքիչը 2 հանելուկի։ Եթե ոչ, ապա սունկերը կհեռանան երգելով.

*«Դու ինձ մոտ մի գա,*
*Քո ճամփով գնա,*
*Չեմ ասի ես քեզ,*
*Թե որ կողմ քայլես։*

Վերջապես՝ խաղի մասնակիցներից մեկը առաջինը կանցնի բոլոր խոչընդոտները և իրավունք կվաստակի ստանալու «Ծեր անտառի բանալին», սակայն այն վայրը, որտեղ թաքցված է բանալին, գիտե միայն «Սպիտակ սունկը»։ Ով կպատասխանի նրա բոլոր հարցերին, կստանա մի ծրար, որտեղ ծածկագրով նշված է թաքստոցը մոտավորապես այսպես՝

«Գտիր այն հին կեչին, որ փչակ ունի, նրանից դեպի հյուսիս 10 քայլ արա և բանալին կգտնես»։

Նշված տեղում թաքցվում է տախտակից պատրաստած և ոսկեզօծված բանալին։

## ԻՆՉՊԵ՞Ս ՎԵՐՋԱՑՆԵԼ ԽԱՂԸ

Փողի ձայնը ազդարարում է խաղի վերջը, և բոլորը հավաքվում են վերջին բացատի մոտ, որը և հանդիսանում է «Կարմիր մարզագետինը»։ Անհրաժեշտ է նախօրոք այդ տարածության շուրջը կարմիր դրոշակներ ամրացնել։ Այստեղ է գտնվում նաև խաղի ղեկավարը։ Նա հաղթողներից ստանում է կախարդական բանալիները։ Տարազներ հագած պիոներները հաղթողներին տալիս են մրցանակներ։ Դրանք էլ հենց այն «Ալվան ծաղիկներն» են, որի մասին գրված էր հայտարարությունում։



# ԲԱՆԱԼԻՆ

Նկ. ՀՐԱՉԻԿ ԳԱԲՈՒՋՅԱՆԻ



# ԴԻԼԻՋԱՆԻ ԱՆՏԱՌՆԵՐՈՒՄ

*ՄԱՐԱ ՄԵՀՐԱԲՅԱՆ*

*Ամեն տարվա նման, անցյալ տարի էլ շատ երեխաներ էին եկել ամառն անցկացնելու գեղեցիկ ու զովասուն Դիլիջանում։ Նրանք մեր հայրենիքի զանազան վայրերից եկած պատանիներ ու աղջիկներ էին, որոնց սերտորեն բարեկամացրեց համատեղ անցկացրած ճամբարային առօրյան։ Նրանք տեղի դպրոցականների հետ միասին արշավներ ու էքսկուրսիաներ կազմակերպեցին դեպի մոտակա տեսարժան վայրերը։ Իսկ ամռան վերջին Անին, Արևիկը, Ալին, Սեիլը, Վալերի Գրիգորը, Ժաննա Դոնեցկայան, Օգսենը և մյուս պիոներները բնագիտական արժեքավոր նմուշներով վերադարձան հարազատ դպրոցը։*

## ՄԵԿԸ ԱՄԵՆՔԻ ԵՎ ԱՄԵՆՔԸ ՄԵԿԻ ՀԱՄԱՐ

*Մենք ճամփա ընկանք վաղ առավոտյան, արևը չծագած։ Անտառում դեռ կիսախավար էր և հեքիաթի պես խորհրդավոր։ Մեր շուրջը բնաթաթախ ծլվլում էին տեսակ-տեսակ թռչուններ՝ բզզում կանաչ փորիկներով ոսկեթև բզեզներ, ծառաբներին ու ծաղիկներին նստած արևին էին սպասում գույնզգույն թիթեռներ։*

*Քայլում էինք իրար հետևից և նայում մեր շուրջը։ Գեղեցիկ էր լեռնային անտառը վաղ առավոտյան։*

*Հանկարծ անտառի խորքից մի ճիչ լսվեց։ Ճիչը կրկնվեց, սաստկացավ։ Բոլոր կողմերից դեպի անտառի խորքը սլացան թռչունները։ Մենք տարակուսանքով նայեցինք միմյանց և ծառերի բներից բռնելով զգուշությամբ շարժվեցինք դեպի անտառի խորքն ու զարմանքից քարացած, մնացինք ծառերին կպած։ Ինչքա՜ն թռչուններ կային։ Մեծ ու փոքր իրար խառնված, շրջապատել էին կաղնու հին ծառը. մերթ տագնապով վեր ու վար էին անում ծառի շուրջը, մերթ պոկվելով ծառից,*

պտտվում բնի շուրջը, մտնում փչակին, ճչում-ծկլթում: Ավելի համարձակները կախվում էին փչակից ներս, ինչ-որ կտցում և սարսափահար ետ ընկրկում:

Հանկարծ փչակից դուրս թռավ կատաղած բուն... Թռչունները ճչալով ետ թռան, բայց ոգեվորված նորից հարձակվեցին և սկսեցին կտցահարել նրան: Ցերեկվա լույսից կուրացած, բուն ոլորեց դեղնավուն աչքերը, տագնապով թարթեց սպիտակ կոպերը, կտուցը կափկափեց և ուժեղ կռինչ արձակելով, նետվեց դեպի թփերն ու խճճվեց մացառների մեջ:

Թռչուններն ասես դրան էին սպասում. այնպիսի աղմուկ բարձրացրին, կարծես միանգամից հազար բու հարձակվեց նրանց վրա և նետվեցին դեպի թփերը:

Բուն հաղթված էր...

Բզկտված, վիրավոր, թողեց գիշերային ավազակն անտառը և փախավ...

— Ա՛յ թե խրատեցին...

— Այդպես են թռչունները. մեկը՝ ամենքի, և ամենքը՝ մեկի համար...

Մենք դուրս եկանք անտառից:

Երկար ժամանակ դեռ լսվում էր թռչունների ճիչն ու ծղրտոցը:

## ՊԱՐԶ ԳՅՈՒԼԸ

Լեռնային պաղ լճակը, որ արցունքի պես ջինջ իր ջրերի համար դարեր առաջ ստացել էր «պարզ» անունը, գտնվում է Դիլիջանից 8 կմ. հեռավորության վրա, անտառապատ սարերի գրկում:

Հարուստ է լճակի ինչպես բուսական, այնպես էլ կենդանական աշխարհը: Կանգնած լճափի բլրակին, մենք հիացմունքով նայում էինք վետվետուն ջրերին: Եղեգների միջից ուրախ կռնչյունով թևթևի դուրս էին թռչում ջրասույզ բադերը, պտտվում լճակի վրա, շեշտակի իջնում ցած, թավալվում ջրի երեսին, շտկվում և առաջ ձգելով պարանոցները, սուզվում լճի մեջ:

Մի պահ փշրվում էր ջրի հայելին, լճակի մեջ ծառերի ստվերները դողդողալով նահանջում էին դեպի ափերն ու... ետ գալիս:

— Ով շու՜տ...

Ձայն տվեց Անին և շեկլիկ մազերը քամուն տված, վազեց ցած:

Մենք պոկվեցինք տեղից և աղմուկով վազեցինք նրա հետևից:

— Ով շո՛ւտ... ով շո՛ւտ...

## ՃԱԳԵՐԻ ՀԱՄԱՐ

Մեր աղմուկից եղեգների միջից դուրս թռան երկու բադ և շեշտակի ընկնելով գետնին, թավալվեցին խոնավ արահետի վրա:

«Վիրավոր են»,— մտածեցինք մենք՝ վազելով նրանց հետևից:

Մի քանի անգամ վեր թևելով և նորից ընկնելով գետնին, հանկարծ բադերը պոկվեցին տեղից և թռչելով դեպի լճակը, կորան եղեգների մեջ:

— Խաբեցի՛ն,— լսվեց Արմենի ծիծաղը. այդ նրանք խորամանկության դիմեցին ձեզ բնից հեռացնելու համար: Նրանց բույնն այստեղ է՝ եղեգնուտում:



— Գտա՛, աղջիկնե՛ր, գտա՛...

Մենք վազեցինք դեպի Կարինեն, որ ետ տալով եղեգները, մատնացույց արավ ջրախոտերով ու աղվամազով ծածկված փոսի մեջ դրված գորշ ու պուտ-պուտ ձվերը:

— Մի հատ վերցնենք նմուշի համար,— խնդրեց Ժաննան:— Ես ինձ հետ Լենինգրադ կտանեմ, կնվիրեմ մեր բնագիտական կաբինետին:

— Իսկ ես...

Բայց խոսքը չվերջացրած, Օգսենը պատյանի միջից հանեց լուսանկարչական ապարատը...

Հետո նա նայեց աղեկտուր ճիչ ու կռինչով եղեգների վրա պտտվող բադերին և գլխարկն օդում թափահարեց.

— Այսքա՜նը, միայն, հարգարժա՛ն բադեր, մենք ձեր ձվերին ձեռք չենք տա, ցտեսությու՜ն ձեզ... մնացեք բարո՛վ...

## Ո՞Վ ՏԱՐԱՎ ՍՓՌՈՑԸ

Սփռոցը փռված էր աղբյուրի ափին, կանաչների մեջ: Սփռոցից քիչ հեռու, Արտաշեսն ու Վալերիկը թղկենուց ոստեր էին կտրատում խորովածի համար: Խորովածի բոցը բռնել էր օդը: Կապույտ ծովը թափանցիկ քողի պես սփռվել էր թփերի վրա:

Լեռնային համեմունքների մի փունջ ձեռքին, Համլիկին մոտեցավ Արմենը:

— Հարգելի՛ «խոհարարուհի», ահա՛ և կանաչին...

Համիկը զարմանքից լայն բաց արած աչքերով նայեց Արմենին, նայեց կանաչի փնջին.

— Բա որ թունավորվե՞նք...

— Ո՛չ, սիրելի՛ Համիկ։ Դարեր շարունակ այս համեմունքներն օգտագործել և դեռ շարունակում են օգտագործել լեռնաբնակ ժողովուրդները։—Եվ քանդելով փունջը, բացատրեց.—Սա սոխուկ է, մեր սոխի վայրի ցեղակիցը։ Սա ուրց է, որը մեր ծիթրոն կոչված կանաչին է հիշեցնում։ Իսկ սա՝ դաղձ է—անանուխ, անշուշտ կերած կլինես. ջրափերին է բուսնում։

Համիկը վերցրեց կանաչին ու վազեց.



— Վա՜յ, երեխանե՛ր, սփռոցն ու՞ր է... սփռոցը չկա՜...

Թուփ ու քար նայեցինք, պտտվեցինք աղբյուրի շուրջը, չկար ու չկար։

Նախաճաշից հետո մենք անտառ մտանք, միջատների, ծաղիկների և դեղաբույսերի նմուշներ հավաքելու համար։ Աղջիկներից մի քանիսը միջատներ էին որսում և գնդասեղներով շամփրում ստվարաթղթերի տուփերին. մյուսները հերբարիումի համար արմատներով հանում էին բույսերն ու դնում բնագիտական ճզմիչների մեջ։ Իսկ մենք մանր-մունր սողուններ էինք որսում։ Հանկարծ խոր թփերի միջից լսվեց Արտաշեսի ձայնը.

— Համե՜ք... շու՜տ...

Մենք վազեցինք Արտաշեսի մոտ։

— Գողին գտե՜լ եմ...

Ա՜յ քեզ հրաշք...

Մենք ձգեցինք խոռոչի միջից դուրս մնացած մեր սփռոցի ծայրը։ Սփռոցից կառչած՝ բնից դուրս եկան գունդուկծիկ եղած ոզնու ձագերը, մայր ոզնու հետ միասին։

Մեր ուրախությանը չափ չկար։ Այդպիսի որս ոչ ոք չէր սպասում։

Ոզնու ընտանիքը մենք տեղավորեցինք ծակոտկեն արկղիկում և նվիրեցինք Վալերի Գրիբկովին, որ իր հետ Մոսկվա տանի՝ իրենց դպրոցի համար։

## ԳՈՇ

(Հին Գետիկ)

Երկրաշարժից ավերված հին գյուղատեղին մեզ վրա ճնշող տպավորություն թողեց։

Մենք դիտեցինք հին խաչքարերն ու վանքի ավերակների բեկորները, որ ծածկվել էին հողի հաստ շերտով ու մամուռով։

Դարեր առաջ այստեղ ապրելիս է եղել հայկական հին օրենքների հավաքագրող, «Դատաստանագրքի» հեղինակ, առակագիր Մխիթար Գոշը։

Երկրաշարժից հետո նահապետն իր ժողովրդի հետ մտել է անտառի խորքն ու հիմք դրել նոր Գետիկին՝ Գոշ գյուղին։

Գոշն այժմ շեն ու առատ գյուղ է. գտնվում է Դիլիջանից 22 կմ. հեռավորության վրա, գեղատեսիլ անտառի ծոցում։

## ՎԵՐԱԴԱՐՁ

Արդեն մթնել էր, երբ մոտեցանք քաղաքին։ Մենք կանգ առանք բլրակի կատարին ու ցած նայեցինք ծառերի միջից. ձորում, լեռնալանջերին անհամար լուսատտիկների նման կայծկլտում էին Դիլիջանի լույսերը։

— Օրերն անցնում են, շուտով կբաժանվենք... — ասաց Սեդը,— բայց տեսեք հա՜, անպայման նամակ գրենք իրար։

— Անպայմա՜ն,—ձայնեցին երեխաները։

Ու մենք քաղաք իջանք, թեև հոգնած, բայց գոհ մեր երեքօրյա արշավից։



# ԿԼՈՅԻ ՎԵՐՋԻՆ ՍԽԱԼԸ



ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

Դե, ո՞վ չի սխալվում. բոլորս էլ սխալվում ենք, բայց և աշխատում ենք ուղղել:

Այդպիսի մի բան էլ ինձ հետ պատահեց: Հաշվապահ մարդ եմ. սրանից մի քանի օր առաջ հաշվեկշիռ էի կատարում, մեր լեզվով ասած՝ բալանս էի փակում, ու 27 կոպեկ ոչ դես, ոչ դեն...

Ամբողջ օրը քրտնեցի, բան դուրս չեկավ: Գիտեմ, հիմա կգտնվեն ձեզնից ոմանք, որ կասեն, թե ի՞նչ կարիք կար 27 կոպեկի համար մի ամբողջ օր հաշվիչը չխչխկացնել, երբ կարելի էր ուղղակի գրպանից դնել ու հաշիվը փակել: Ոչ, բարեկամս, եթե գրպանիցդ էլ դնես, մի օր նորից գաղտնիքը կըբացվի. խելոք մարդիկ կգան, ընդհանուր հաշվեկշիռ կանեն, ու այդ ձեզ համար չնչին թվացող 27 կոպեկը հաշվեմատյանը ծակելով դուրս կգա, կցցվի դիմացդ:

Հիմա կասեք, եղբայր, սա մեզ Կլոյի պատմությո՞ւնն է անելու, թե՞ իր 27 կոպեկի: Իրավունք ունեք, ներեցեք, բայց և մի մոռացեք, որ եթե չլիներ այդ չարաբաստիկ 27 կոպեկի պակասը, Կլոյի պատմությունն էլ չէր լինելու...

Մի խոսքով, ամբողջ օրը հաշվում եմ, հաշվում, 27 կոպեկը պակաս է ու պակաս: Հաշվեմատյանը խփեցի թևիս տակ, եկա տուն, ու մինչ մի կողմից ճաշում եմ, 27 կոպեկը ասես ցցվել է դիմացս ու պար է գալիս, ուզում եմ բռնեմ, հասկանամ, թե ախր այդ ինչպե՞ս է դուրս թռել հաշվից, բայց իզուր...

Մենք մի հարևան ունենք, ավագ հաշվապահ է. շատ ազնիվ մարդ է և գործի մեջ նմանը չունի: Անունը չեմ տալիս ոչ թե նրա համար, որ ինձնից լավ հաշվապահ է, ոչ. բոլորն էլ գիտեն, որ նրա մասին ես ամեն տեղ էլ լավն եմ ասում, հիմա անունը չեմ տալիս, որովհետև նրա որդու՝ Կլոյի պատմությունն եմ անելու: Դե, անհարմար բան է, երբ հարևանի, այն էլ լավ հարևանի տան գաղտնիքը դուրս ես հանում: Հիմա եթե անունը տամ, մարդը վեր կկենա ու կասի՝ տեսեք, եկավ մեզ մոտ, 27 կոպեկի սխալը գտանք, ուղղեցինք, հետո, որպես հարևանի հավատացինք ու իր ներկայությամբ մեր Կլոյի ականջները քաշեցինք: Եվ ահա վեր է կացել, հաշվեմատյանը մի կողմ դրած՝ մեզ վրա պատմվածք գրել: Կասի և իրավունք էլ ունի: Դրա համար էլ ես Կլոյի անունը Կլո էլ թողի, թեև, ինչ մեղքս թաքցնեմ, ինքս էլ չգիտեմ, իսկական անունը Գալո՞ւստ է, որ Գալո դառնալուց հետո Կլոյի են շուռ տվել, թե՞ երեխա ժամանակ կլորիկթմփլիկ է եղել, սիրելով Կլո-Կլո են ասել ու մինչև օրս էլ Կլո են կանչում: Մի խոսքով, իմ ազնիվ հարևանը մի կես ժամվա մեջ գնդացրի նման այնպես չխչխկացրեց հաշվիչը, որ ինչպես ասում են, այդ հոգեհան 27 կոպեկը չդիմացավ կրակին ու ձեռքերը բարձրացնելով դուրս եկավ:

Դե, ես №.... խանութում հաշվապահ եմ, անունս Հարություն Մեսրոպի Ավետիսյան, 1907 թվականի ծնունդ, բուն Ղարաքիլիսայից՝ այժմ Կիրովական: Ինչևիցե, 27 կոպեկը գտնվեց: Հենց այն է, ուզում էի շնորհակալություն հայտնել ու ձեռքս հաշվեմատյանիս էի տարել, երբ հարևանս թե՝

— Մի նարդի չգցե՞նք:

Նստեցի: Հարևանս հազիվ էր բաց արել նարդին, երբ դուռը բացվեց, ու ներս մտավ Կլոն:

Եթե անունը իսկապե՞ս կլորիկ լինելուց է մնացել, հիմա կլորիկ չէ: Դե, այդքան վազվզելուց, ժամանակին չճաշելուց հետո կլորիկությու՞ն կմնա: Մնացել է կաշին ու ոսկորը:

— Ա՛յ տղա, արի մի տեսնեմ,—հանկարծ Նարդին մի կողմ հրելով, ոտքի ելավ հարևանս,—այս ո՞րտեղ էիր մինչև հիմա:

Նայում եմ ժամացույցին. հը՜մ, տասն անց կես...

Դե, ես էլ անհարմար դրության մեջ եմ. մեկ նայում եմ հաշվեմատյանիս, մեկ՝ Նարդուն. գնա՞մ, թե նստեմ. ինչպե՞ս գնամ, մարդը 27 կոպեկը գըտավ՝ հարգելի էր, հիմա, երբ ուզում է մի քիչ ժամանակ անցկացնել, վեր կենամ գնա՞մ:

Ու ճարահատված, խորը շունչ քաշելով նայում եմ Կլոյին. տեսնենք ինչ է պատասխանելու:

Իսկ Կլոն՝ քարը ձեզ օրինակ:

— Ո՞րտեղ էիր,—հարցնում է նորից հարևանս, այս անգամ ձայնը բարձրացնելով:

— Պադվալում...

— Ի՞նչ էիր անում...

— Լիժեքս էի փնտրում...

— Ինչի՞ համար...

— Հրազդան ենք գնալու...

Թյու՜. դառնաս ասես, ա՛յ Կլո, քո ի՞նչ Հրազդան գնալու...

— Դու այդ երբեք չես տեսնի,—ասես միտքս հասկանալով, վրա է բերում հարևանս,—մի օր այդպես գրքերդ փնտրեիր՝ չէ՞ր լինի...

— Եսիմ, որ չեմ գտնում...

— Գրքե՞րդ...

— Լիժեքս...

— Ձայնդ մի՛ բարձրացրու, թե չէ ավելի կկտըրվի,—հանկարծ ինձ էլ մեծ զարմանք պատճառելով, վրա է բերում հարևանս:



Այ՛ քեզ բան, զարմանում եմ ես. փոխանակ խրատելու, դեռ սրա ձայնի մասին են մտահոգվում... Հետո, մի՞թե այդ տղայի ձայնը կտրված ձայն է...

Բան չեմ հասկանում...

— Հասկացա՞ր ինչ եմ ասում,—ասես ինձ դիմելով կրկնում է հարևանս:

Ու մինչ ես շշմել-մնացել եմ, Կլոս կաս-կարմիր է կտրում:

— Ինչո՞ւ ես լռում. այսօր պատմության դասի ժամանակ քո ձայնը կտրված չի՞ եղել,—դառնորեն շարունակում է հարևանս, ու մինչ կինը աչքով է անում, դառնում է դեպի ինձ,—լսում ես, Հարություն ջան, այսօր սա մի հերթական խաղ է խաղացել դպրոցում, ուղղակի թատրո՛ն. պատմության դասը չի իմացել ու ձևացրել է, թե ձայնը կտրված է...

Ես կարեկցաբար օրորեցի գլուխս:

— «Երկու» ես ստացել, «երկու», հասկանու՞մ ես,—հոգնած ու դառն ձայնով նորից որդուն դարձավ հարևանս:— Եվ քեզ թվում է, որ խաբե՞լ ես ուսուցչուհուդ... Օրագիրդ ու դասագրքերդ բեր,—հանկարծ խստորեն ավելացրեց նա:

Կինը ընկավ բազմոցի ծայրին և ձեռքով ծածկեց երեսը: Ես էլ անհամբերությունից չգիտեի ինչ անել. ինչքան հիշում եմ՝ սկսեցի քրտնել:

Մեկ էլ գլուխս բարձրացրի այն ժամանակ, երբ հարևանս որդու օրագիրը բռնեց ուղղակի քթիս տակ.

— Նայի՛ր, Հարություն ջան, նայի՛ր. երկու հատ «երեք» ունի, մնացածը «երկուսներ» են...

Ես, որ թվերի հետ գործ ունեմ, այդ երեքները չկարողացա ջոկել. մի գլուխ երկուսներ էին, որ խժլժում էին իրար գլխի...

— Այժմ անցնենք սրա դասագրքերին,—ասում է հարևանս ու քթիս տակ բռնում գրքերից մեկը,—սա ի՞նչ գիրք կլինի,—դառնորեն ասում է նա, ասես մեղավորը ես լինեմ:

— «Իզիկ»... —զարմանքից աչքերս թարթելով կարդում եմ ես:

— Ֆիզիկա,—հառաչում է հարևանս,—դեռ դա ի՜նչ է... Ահա, նայեցե՛ք, ո՛վ կլինի սա, Հարություն ջան:

Նայում եմ. տակը գրված է Բլեզ Պասկալ, բայց թե թանաքով այնպիսի բեղ-մորուք է ավելացրած ու մի չիբուխ էլ բերանին դրած, որ շշմելդ կգա... Ծատը հենց այդ չիբուխից եմ զարմանում, որ ոչ թե ձեռքով է ավելացրած, այլ տպած է...

— Զարմանում ես, հա՞, Հարություն ջան,—գլուխն օրորելով ասում է հարևանս,—բեղ-մորուքի՞ց ես զարմանում, թե՞ չիբուխից:

— Երկուսից էլ...



— Բայց ես մի ուրիշ բանից եմ զարմանում:

— Ինչի՞ց...

— Թե ինչպես են, ա՛յ, այս չիբուխը, որ ուրիշ բան չէ, եթե ոչ հենց այս նույն էջում եղած կորացրած խողովակներից մեկը, տեղափոխել այստեղ: Տեսնու՞մ եք,

40 նկարի տակ գրված է «Երկու կորացրած խողովակ», բայց մնացել է մեկը:

Իսկապես, որ զարմանք բան՝ է. ուսերս եմ ցընցում, և հենց այդ վայրկյանին լսում եմ հարևանիս աղջկա ձայնը, որ չգիտեմ, թե երբ էր սենյակ մտել: Ի միջի այլոց, ասեմ, հիանալի աղջիկ է, բուժֆակի երկրորդ կուրսից, մի հրաշք աղջիկ:

— Հայրիկ,—ասում է նա,—մատը թրջում են թքով, սեղմում փորագրանկարի վրա, որից փորագրանկարը դրոշմվում է մատին, հետո նորից թրջելով այն տեղափոխում են մի ուրիշ տեղ: Վայրենություն է ուրիշ ոչինչ:

— Դե լա՛վ, լա՛վ,—հանկարծ քրոջն է դառնում Կլոն,—եթե ինքդ արած չլինես, որտեղի՞ց գիտես...

Բայց հոր հայացքը այնպես խիստ է, որ ոչ Կլոն է շարունակում, ոչ էլ խեղճ աղջիկն է փորձում պաշտպանվել:

— Այստեղ նայիր, Հարություն ջան, այստեղ նայիր,—հառաչելով ինձ է դառնում հարևանս, այս անգամ ցույց տալով «Գազերի կշիռը» հոդվածի ծորակավոր ապակյա գնդի նկարը,—տե՛ս, թե ինչպես է գնդի վրա քիթ ու բերան ավելացրել, իսկ այս անբոստատը տեսեք...

Դե ի՞նչ տեսնելու բան էր. օդապարիկին քիթ ու բերան էր ավելացրել, զամբյուղի վրա՝ փողկապ, ապա ոտքեր ու ձեռքեր. մի խոսքով, ասես Գուլիվերը կանգնած լիներ թզուկների աշխարհում...

«Ֆիզիկա»-ից հետո նայեցինք «Աշխարհագրություն»-ը: Դա ուղղակի մեզ դեռ անծանոթ մի մոլորակի մասին դասագիրք էր, իհարկե, Կլոյի տպարանից... Իսկ երբ հասանք «Եկրաչափությանը», որից մնացել էր «ԵՐԿ...ՈՒԹՅՈՒՆ»: Այստեղ ուղղակի պիտի գլուխդ բռնեիր ու փախչեիր, ասես մուլտիպլիկացիոն ֆիլմից վերցրած կադրեր լինեին: Պատկերացրեք, որ բաժանմ.ան կարկինն անգամ ոտքերը չաղ մարդու փոխակերպվի...

Ինչևիցե, երևի այդ պատմությունը երկար կտևեր, եթե հանկարծ դուռը չբախեին:

Հարևանուհիս վեր թռավ, ես էլ թեթևացած շունչ քաշեցի: Ներս մտավ մեր մի ուրիշ հարևանուհին՝ տիկին Վարսենիկը ու բոլորիս բարևելուց հետո, իմանալով, թե ինչ դատ ու դատաստանի վրա ենք, ժպտալով դարձավ Կլոյին, թե՝

— Կլո ջան, մեր Վահրամի խողովակն արդեն անցել է, վաղը չէ մյուս օրը դպրոց է գալու, ինչ լավ է, որ դու էլ պարապում ես,–գրքերը տեսնելով ասաց նա,—չանցած դասերը համարյա բոլորն էլ պատրաստել է, միայն երկրաչափությունն է մնացել, եկել եմ տեղն իմանալու:

— Դե, ո՞ւմ մտքով կարող էր անցնել. Կլոն մի քիչ շփոթվեց, ապա բաց արեց գիրքը ու մատը քսեց մի երկու էջի:

— Վա՜յ,—ուրախացավ տիկին Վարսենիկը,—Վահրամը սովորել է դա. ուրեմն կրկնություն է:

Կլոն գլխով հաստատեց, դրանով էլ ասես ամեն բան մոռացվեց. հարևանուհիները սկսեցին իրենց զրույցը, մենք էլ՝ մեր նարդին:

Երեք անգամ ես տարա, հարևանիս տրամադրությունն ընկել էր: Խաղում էր, բայց վա՛յ էն խաղալուն...

* * *

Երեք օր հետո, առավոտյան, վազում եմ, որ տրամվային հասնեմ, մեկ էլ տիկին Վարսենիկը կտրում է դեմս, թե՝

—Ընկեր Հարություն, լավ պատահեցինք. շատ եմ խնդրում, որ հենց հիմա ինձ հետ գաք դպրոց:

— Ինչի՞ համար, ես ի՞նչ գործ ունեմ այնտեղ:

Նա թե՝

— Պատկերացնու՞մ եք, Կլոն այն օրը դասի տեղը սխալ ցույց տվեց, դե, պարզապես ասաց, թե կրկնություն է, ու տղաս էլ, որ միշտ «հինգերով» է սովորում, «երկու» ստացավ..

— Լավ, ես ինչո՞վ եմ մեղավոր,—ասում եմ:

— Դե ինչպե՞ս թե...չէ՞ որ դուք էլ այնտեղ էիք, գնանք ու վկա եղեք, որովհետև չեն հավատա...

Ա՛յ քեզ հարևանուհի. դե, մարդիկ էլ կան, որ հարևանությունը այդպիսի բաների մեջ են տեսնում... Ասա, ա՛յ տիկին Վարսենիկ, տղադ որ մինչև հիմա «հինգերով» է սովորել, սրանից հետո էլ կսովորի, հիմա ի՞նչ է պատահել, որ մի «երկուսի» համար գնանք ու վկա կանգնենք. չէ՜-մի դատարան... Մի խուսքով, մեկ մեղավորի նման ժպտում եմ, մեկ գլխով ճռճռացող տրամվայը ցույց տալիս, ու մինչ նա ձեռքը կգցեր վերարկուիս կոճակին՝ գլուխս առած վազում եմ առաջ...

Բայց տրամվայի հետևից հասնելը հե՞շտ բան է, այն էլ ինձ նման ստամոքս ունեցող 54 տարեկան մեկի համար...

Տիկին Վարսենիկը խռոված մի կողմ է գնում, տրամվայը՝ մյուս. իսկ ես էլ մի գլուխ նայում եմ ժամացույցիս: Նոր տրամվայը չկա ու չկա: Հանկարծ նայում եմ ցած, տրամվայը կանգ է առել, ուրեմն հոսանքն են կտրել, վազում եմ առաջ՝ շարժվում է, շուռ եմ գալիս նոր տրամվային հասնելու՝ դա էլ է տեղից շարժվում...

Դե, օրը որ թարսությամբ է սկսվում, այդպես էլ գնում է մինչև վերջ: Հասա խանութ, ու այնտեղ էլ մեր դիրեկտորը...

Է՜հ, դա պատմելու բան չէ. դրա համար ոչ թե պատմվածք, այլ վեպ եմ գրելու. իրեն էլ ասել եմ, այնպես գրեմ, որ քեֆը գա...

# ՊԱՏԱՆԻ ՎԱՐՊԵՏՆԵՐԸ

*Մ. ՊԻՏԼՅԱՐՍԿԻ*

Կոլյան խարտոցով խարտում է արագ,
Գևորգն հղկում է ու փայլեցնում.
Եվ նրանց ամուր, ժիր մատների տակ
Անշունչ երկաթն է ասես կյանք առնում:
Բանալիների խրձիկը ձեռին՝
Հերթապահում է Աղասին այսօր.
Նա մասնագետն է մեքենաների,
Լրջադեմ, խոհուն, ինչպես պրոֆեսոր:
Քշտել է ահա թևքերը յուղոտ,
Ու խոհուն կանգնած դազգահների մոտ,
Բանալիներն է սրբում նա սիրով
Իր բանվորական, ուժեղ ձեռքերով:
Մեկ էլ ինչ-որ զիլ մի ձայն է հնչում.
Այդ ո՞վ է, արդյոք. օգնության կանչում:
— Փականագործնե՛ր, շուտ այստեղ հասե՛ք,
Մեքենան կանգնեց... Ի՞նչ եղավ տեսեք...
Կանգնել են ահա տղերքը հուզված
Եվ նայում են լուռ դազգահին հիվանդ:
Մամլող աղջիկը վարպետ է փորձված,
Մեքենան՝ չուգուն, առանցքը՝ պողպատ:
Առանցքակա՞լն է գուցե կոտրվել...
— Այո՛, իհա՛րկե,—ասաց Աղասին,—
Ճաքել է արդեն, դա պետք է փոխել:—
Ու գործի անցան նրանք միասին:
Եվ բրիգադը պատանիների
Վերանորոգումն ավարտեց շուտով:
Մոտեցավ աղջիկն իր մեքենային
Ու ասաց նրանց գոհունակ սրտով.
Ապրե՛ք, տղանե՛ր, գործից երևաց,
Որ ձեր արհեստը սիրում եք սրտանց:

*Ռուս. թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆ*



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ



# ԸԲՆ ԱՐՄԱՆ

*(Ակնարկ)*

ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

Մայրը վաճառել է տղային մի արաբի: Արաբը գնել է ինը տարեկան երեխային, գնել ու տարել է իր հետ։ Մոր չորացած ձեռքերում մնացել է արծաթե երկու մեջիդե և երկու բաղարջ, երեխայի գինը։ Նայել է խեղճ կինը կմաղքացած որդու հետևից և չի կարողացել արտասվել.

— Գնա, որդիս, գուցե դու կենդանի մնաս,—շշնջացել է նա:

Իսկ երեկոյան մահացել է՝ արծաթե մեջիդեները ձեռքին. բաղարջները քաշել, լափել են քաղցած շները...

Սելեմյա է կոչվել այն գյուղը, ուր տարել է երեխային արաբը։

— Ըբն Արման,—ասել է արաբն իր տղաներին, որ նշանակում է՝ հայի տղա է։ Երբ տղան վազել է ուլերի հետևից, իր գառնարած ընկերներն է ունեցել։ Ըբն Արման են անվանել նրան ընկերները։

— Զգույշ եղեք՝ թուրքերը չլսեն այդ անունը, թե չէ մեր Արմանին կտանեն մեզնից,—ասել են մայրերը իրենց գառնարած որդիներին։

Ժամանակն անցնում էր, Ըբն Արմանը խոսում և մտածում էր արաբերեն, մոռանում մորը, մոռանում է հայերենը.

— Ըբն Արմանը դուք եք,—հանդիմանում է նա արաբ գառնարածներին, չհասկանալով, որ ինքը հայ է։

Եվ նա այդպես էլ կարաբանար, եթե մի օր, թուրքի մի լամուկ լուր չտաներ իր հորը, որ հայի տղա է տեսել...

1915 թվականին, գարնանային մի երեկո, երեք հեծյալներ բռնում են հայ տղային, գցում կաշվե պարկի մեջ ու տանում։ Գառնարած երեխաները տուն են վազում և պատմում, թե ինչ է կատարվել։

Արևն իջավ Սավաֆի գյուղից ոչ հեռու և թաքնըվեց տաք ավազների բլրակի հետևում։ Եթե արևը նորից չբարձրանար, փոքրիկը չէր բացի աչքերը, չէր տեսնի այդ պայծառ օրը, սարսափից չէր սողա իր նման երեխաների դիակների կույտի միջից։ Նա փախավ առանց հասկանալու, թե ուր է փախ-

ճում։ Նա ոչինչ չուներ. բացի մի բանից, որ նվիրել էին նրան արաբ գառնարածները՝ Ըբն Արման անունը, եթե չհաշվենք այն վերքը, որ բացել էին նրա մեջքին թուրք գազանները։ Գիշերը վրա հասավ, Ըբն Արմանը քնեց։ Երբ արթնացավ, մեջքը կապած էր շալով, գլխի տակ խուրջին էր դրված։

— Ո՞վ ես, փոքրիկս։

— Ըբն Արման,—շշնջաց տղան և տեսավ մրոտած սներ, բաց երդիկից ընկնող լույսի շողը և հասկացավ, որ ծածկ կա գլխավերևում։

Ծածկը ուրիշի էր, հայրենական չէր։ Կիսավեր, լքված ծածկի տակ ապաստանել էին երկու ընտանիք։

— Վերցրեք ձեզ հետ, տարեք այս երեխային,— խնդրեց ծերունին,— մենք այստեղ կմնանք, այլևս շարժվելու ուժ չունենք։

Տիգրանակերտի շրջանի Սևերեկ գյուղացին ճանաչեց փոքրիկին.

— Թող գա,—ասաց նա կիսամեռ ծերունուն,— ես գիտեմ ում տղան է սա։

Եվ նույն օրը, մի լաթի վրա, հայերեն տառերով գրեց. «Պողոս Բորոյան, Տիգրանակերտի Սևերեկ գյուղացի» —գրեց ու կախեց տղայի կրծքին։ Նույն օրը տիգրանակերտցու կինը մի փայտի վրա շոր փաթաթեց, ծլանքներ կապեց, հինգ կոպեկանոցի չափ մի թիթեղի կտորի վրա սպիտակ շոր կարեց, դեմք ու երես նկարեց, տվեց Պողոսին ու ասաց.

— Վե՛րցրու, որդիս, Ըբն Արման է սրա անունը։ Տե՛ս, ինչքան նման է քեզ։

* * *

Գնաց նա տիգրանակերտցի հայ ընտանիքի հետ, բայց տեղ հասավ մենակ...

Այդ ընտանիքից մի հիշատակ ունի նա միայն, փայտի կտորի վրա փաթաթած ծլանքներով տիկնիկը։ Ո՞րտեղ հասցրին թուրքերը նրանց, ո՞րտեղ է հիմա այդ ընտանիքի փոշին, ո՞ր քամու բերնին, ո՞ր ջրի տակին... Նա ոչինչ չի հիշում։ Արաբները նրան տվեցին Ըբն Արման անունը, տիգրանակերտցի ընտանիքը, Պողոս Բորոյան՝ Սևերեկ գյուղից և մի տիկնիկ՝ Ըբն Արման անունով։ Ահա այն բոլորը, ինչ նա բերեց իր հայրենիքից։ Եվ այս բոլորն էլ հիմա նրա հետ են։ Պողոս Բորոյանը դարձավ Պավլուս Բորոյան։ Իսկ տիկնի՞կը, փայտի վրա փաթաթած ծլանքներով տիկնի՞կը։ Տիկնիկը նույնպես մնաց...

* * *

Գլուխը կախ, մի ահագին կապոց թևի տակ, շտապով բարձրանում է աստիճաններով, բարձրանում, իջնում, մտնում է սրահները, դահլիճները, և հանկարծ ինչ-որ տեղից կատվի մլավոց է լսվում, քոթոթի հաչոց, գառան մայուն կամ մկան ծլծվոց։

Առավոտից մինչև երեկո նա ոտքի վրա է։ Նիհար, միջահասակ, առատ մազերով, ակնոցավոր մարդ է նա։ Արդեն հիսուն տարեկան է։ Բորոյանների տնից մնացել է միայն այդ մեկը։ Եվ նա մնացել է, որովհետև մայրը վաճառել է նրան երկու արծաթե մեջիդեով և երկու բաղարջով, պատահական մի արաբի։

—Եթե մի հրաշքով ես գտնեի այն արաբ գառնարածներին, — ասում է նա կես լուրջ, կես կատակ,—և եթե նրանք այնպես փոքրիկ լինեին, ես նրանց ցույց կտայի իմ տիկնիկները, կերգեի նրանց համար։ Նրանք շատ կուրախանաին, կծիծաղեին, կգրկեին ինձ և զիլ ձայնով կգոչեին, Ըբն Արման։ Ես լիովին վարձատրված կլինեի։

—Ես երազում եմ, անվերջ երազում։ Մի ժամանակ ինձ Լիր արքա էի կարծում, Համլետ, Օթելլո, երազում էի հին աստվածների մասին, ցանկանում էի Աբելյանի հետ բեմ բարձրանալ, Փափազյանին կրկնել, Ջանանի դերերը խաղալ։ Ինչե՞ր ասեք, որ չեմ երազել, մեղավոր սրտով։

—Որտեղից է ձեր Պավլուս անունը,—հարցնում եմ ես նրան մի անգամ։

— Հրաչյա Ներսեսյանին հարցրեք, նա տվեց ինձ այդ անունը։ Նա ինձ Պավղուս անվանեց, ես էլ «ղ»-ն «լ» դարձրի։ Նույն Պողոսն է, ոչինչ չի փոխվել։ Մի տիկնիկս տասն է դարձել։ Բացի այդ, ես աշակերտներ ունեմ, շուտով նրանք կանցնեն իրենց ուսուցչից։



Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



Լուսանկար՝ ԶՈՆԻԿ ՍԱՐԳՍՅԱՆԻ

Երբ գիշերն իջնում է քաղաքի վրա և երեխաները քուն են մտնում, նա կամաց մոտենում է իր սեղանին, նստում մաշված բազկաթոռին և երկա՜ր, շատ երկա՜ր զրուցում իր տիկնիկի հետ.

— Ըբն Արման, իմ փոքրիկ բարեկամ...

Նա խոսում է, բայց ձայնը չի լսվում, լսում է նրան տիկնիկը, միայն տիկնիկն էլ լսում է Պավլոսին և կարծես պատասխանում է անլսելի ձայնով. «Թող ինձ հանգիստ, ես պատկանում եմ մոռացությանը։ Նա տանում է ինձ, և դու մի կասեցնի, մի պահի՝ թող որ մոռացությունը տանի, տանի հեռո՜ւ-հեռո՜ւ ավազուտներում, հեռավոր, օտար երկրներում թաղելու համար։ Վաղուց արդեն ժամանակն է, որ դու ինձ մոռանաս, հանգիստ թողնես։ Մի՛ չարչարի, կյանքի մի կոչիր ինձ, ես արդեն բավականաչափ տանջվել եմ կյանքում...»

— Ես ցանկանում եմ, որ դու էլ ապրես այնպես երջանիկ, ինչպես իմ այս տիկնիկները։ Չէ՞ որ, դու երբեք չես ապրել։

«Այդ անհնարին է։ Ես պատկանում եմ անցյալին, դու չես կարող ինձ կյանքի կոչել»։

— Ես քեզ մենակ թողնել չեմ կարող։ Դու երբեք չես ապրել։

«Տո՛ւր, հանձնիր ինձ մոռացությանը։ Տո՛ւր, թող տանի։ Զբաղվի՛ր այս երջանիկ տիկնիկներով։ Ապրի՛ր ապրողների հետ, մի՛ խռովիր տարիների անդորրը, թո՛ղ որ մի քիչ էլ ես հանգստանամ»։

Եվ ամեն գիշեր մոռացությունը մտնում է նրա տունը, և ամեն գիշեր մի ճերմակ մազ է ավելանում արտիստի գլխին։ Եվ քանի գնում պակասում է նրանց զրույցը գիշերվա կեսին, և ամեն գիշեր մի պահ շուտ է մարվում նրա տան կանաչ լուսամփոփը։ Եվ բարձրանում է նստած տեղից ալեխառն մարդը, ծածկում է քնած երեխաներին ու ինքն էլ կամաց անկողին մտնում։

... Գլուխը կախ, կարծես ինքն իրեն զրուցելով, մի ահագին կապոց թևի տակ, շտապ բարձրանում է աստիճաններով, բարձրանում, իջնում, մտնում է սրահները, դահլիճները, և երեխաները շրջապատում են նրան։ Նա նայում է երեխաներին, և աչքերը լցվում են արցունքով, բայց ինքը ծիծաղում է, կատակում և, կարծես, բոլորովին երիտասարդ մի տղա, թեթև թռչկոտում է նրանց հետ։

— Ըբն Արման,— շշնջում է նա այնպես կամաց, որ ուրիշները չլսեն։

Հետո երգում է, երգում է երկար ու քնքույշ ձայնով։ Երգում են երեխաները, երգում են փոքր ու մեծ տիկնիկները, և նա մոռանում է գիշերվա զրույցը, մոռանում է փայտի վրա փաթաթած ծլանքներով, դարակում պառկած տիկնիկին։ Եվ ազատ է հոգին, անկաշկանդ, ինչպես հրճվանքն այն երեխաների, որ շրջապատել են նրան։

Վազում է նա, վազելով է իջնում ու բարձրանում ամենաերկար աստիճաններն անգամ, ոչ հոգնում է, ոչ սրտնեղում, ոչ հանգիստ և ոչ էլ դադար ունի այս Ըբն Արմանը։

Ապրում է նա տիկնիկների աշխարհում, որ հլու հպատակ արտիստի կամքին, նրա մատերի շարժմամբ, թախծում և հրճվում է, ուրախանում և երգում...

# ՍԻՐԵԼԻ ՊԻՈՆԵՐՆԵՐ

*ՊԱՎԼՈՍ ԲՈՐՈՅԱՆ*

*(Հայկ. ՍՍՌ վաստ. արտիստ)*

Օրեցօր ավելի լայն տարածում է գտնում տիկնիկային թատրոնը: Մեր ռեսպուբլիկայի որոշ դպրոցներ սեփական ուժերով ստեղծել են իրենց տիկնիկային թատրոնները: Այդ դպրոցների երեխաները ոչ միայն ելույթ—ներկայացումներ են ցուցադրում, այլև հենց իրենք էլ պատրաստում են բեմ, տիկնիկներ և զանազան անհրաժեշտ իրեր:

Դուք ինքներդ էլ կարող եք պատրաստել այդ ամենը և ունենալ ձեր տիկնիկային թատրոնը դպրոցում, տանը և ճամբարում: Ինչպե՞ս կարելի է անել այդ ամենը: Այդ մասին այսօր կպատմենք ձեզ:

Տիկնիկային թատրոնով կարող են զբաղվել բոլոր հասակի մարդիկ. փոքրերն՝ իրենց հասակակիցներին, իսկ մեծերը փոքրերին զբաղեցնելու համար: Լավ իմացեք, որ թատրոնն ավելի հետաքրքիր դարձնելու և ձեր արվեստը կատարելագործելու հարցում շատ կարևոր են ձեր **հմուտ ձեռքերը, սրամտությունը և հնարամտությունը:**




Քանի որ մեր դերակատարները տիկնիկներն են, սկսենք նրանց պատրաստման եղանակներից:

## 1. ԻՆՉՊԵ՞Ս ՊԱՏՐԱՍՏԵԼ ՏԻԿՆԻԿՆԵՐ

Մեզ անհրաժեշտ են լինելու մարդ և կենդանի տիկնիկներ: Մարդ տիկնիկ պատրաստելու համար նախ պետք է շորից կարել երեքմատնանի ձեռնոց, որն ունենա մոտ 30 սմ երկարություն (Նկ. 1): Կարելուց հետո ձեռնոցամարմնին պետք է համապատասխան զգեստ հագցնել:

Տիկնիկավարության ժամանակ ձեռքի ճկույթը և մատնեմատը ծալվում են, իսկ մնացած երեք մատները մտնում են ձեռնոցի երեք մատերի մեջ: Միանգամյա ելույթ-ներկայացումների համար տիկնիկի գլուխը կարելի է պատրաստել չկեղևած կարտոֆիլից: Պետք է ընտրել համապատասխան ձևի և չափի կարտոֆիլ, քանդակել քիթ, բերան, աչքեր պատրաստել, մազեր փակցնել և ծնոտի տակից անցք պատրաստել մատի վրա հագցնելու համար:







Երկարատև գործածության համար ամենահարմարը թղթածեփածո գլուխներն են: Այդպիսի գլուխներ պատրաստելու համար նախ կավից քանդակում ենք մեր ցանկացած գլուխը, առանց մանրամասնությունների, ընդգծելով քիթը, աչքերը, մազերը: Գլխի բարձրությունը պետք է լինի 10—11 սմ, լայնությունը՝ 7—8 սմ (Նկ. 2): Վերցրեք ստվարաթղթի մի շերտ 11 սմ լայնությամբ և 44 սմ երկարությամբ: Այն ոլորեցեք շրջանաձև, ծայրերը երկուական սանտիմետրի չափ դրեք իրար վրա և կարեք: Ստացված անհատակ «բաժակը» դրեք որևէ հարթ տախտակի վրա: Մի խոր ափսեի մեջ (ավելի լավ է ռետինե ափսե, կամ պատռված գնդակի կեսը) գիպսի մածնանման շաղախ պատրաստեք: Շաղախը լցրեք մինչև բաժակի ճիշտ կեսը: Նախապես վազելինապատված կավե գլուխն անմիջապես երեսնիվայր մինչև ականջները ընկղմեք գիպսի մեջ և գիպսի վրա մատով փոսիկներ արեք (Նկ. 3): Գլխի շուրջը գիպսի մակերեսը վազելինապատեք: Նորից գիպսի շաղախ պատրաստեք և լցրեք բաժակը մինչև եզրերը: Ջրանալուց հետո ստվարաթղթե բաժակի կարերը քանդեք և ստվարաթուղթը հեռացրեք: Ստացված գիպսե կաղապարի երկու կեսերը զգուշությամբ անջատեք իրարից: Հանեք կավե գլուխը և դրեք մի կողմ: Հիմա վերցրեք լրագրի թուղթ և







ձեռքով շատ մանր պատառոտեք: Պատրաստեցեք նաև հյուսնի սոսինձի շփոթ: Կաղապարների ներսի կողմից (անպայման սկսելով կենտրոնից և լավ հարթեցնելով) մեկ շերտ ջրի մեջ թրջած թղթի պատառներ փակցրեք: Հետո չորս-հինգ շերտ սոսնձի մեջ թաթախած թղթեր փակցրեք: Վերջին շերտը փակցրեք բյազ կամ շղարշ: Բոլոր շերտերը փակցրեք այնպես, որ մեկ սանտիմետրի չափ ծալվեն կաղապարի եզրերի վրա (Նկ. 4): Թողեք, որ թղթա-ծեփվածքը լավ չորանա: Ջրանալուց հետո հանեք կաղապարներից գլխի երկու կեսերը, եզրերի ավելցուկը կտրեք: Սոսնձած բյազի շղարշի միջոցով երկու կեսերը միացրեք իրար (Նկ. 5): Ջրանալուց հետո հղկաթղթով լավ հղկեք (բացի այն տեղերից, որտեղ մազ պետք է լինի): Սոսինձով և ատամնափոշով շփոթ պատրաստեք և գլուխը պատեք ներկային շերտով: Ներկեցեք գլուխը համապատասխան գույներով: Աչքերը պատրաստեք ուլունքներից, ուռուցիկ կոճակներից կամ ապակու կտորներից: Մազերը կարելի է պատրաստել մորթուց կամ թելերից: Մի խոսքով, նայած ձեր հնարամտությանը:

Ձեռքերը և ոտքերը նույնպես, կարելի է պատրաստել թղթածեփածո, բայց կարելի է նաև կարել շորից, մեջը բամբակ լցնել և թաթախել սոսնձի մեջ: Պետք չէ, որ ձեռքի բոլոր մատները երևան: Կարելի է պատրաստել չորս մատները միացած, մեկը առանձին, կամ երեքը միացած, երկուսը առանձին: Ամեն ինչ պատրաստելուց հետո գլուխը ամրացրեք ձեռնոցի ցուցամատին, ձեռքերը՝ բութ և միջին մատներին, և ձեր տիկնիկը պատրաստ է:

Կենդանիներ պատրաստելիս ձեռնոց մարմինը կարեք հա-

մապատասխան գույնի կտորից և խողովակաձև ատիճանա-բար լայնացող, որպեսզի տիկնիկավարի ձեռքը և թևը մըտ-նեն մեջը (նկ. 1)։ Վերջավորությունները՝ մորթով, մազով կամ բարակ թաղիքով պատեք։ Թաթերի վրա կճղականման ցցուկներ պատրաստեք։

## 2. ԲԵՄ

Տնային պայմաններում բեմ կարող է հանդիսանալ մի պատից մյուսը ձգված, պարանի վրա փռված, ոչ վառ գույնի սավանը, կամ սփռոցը։ Բեմ կարող է հանդիսանալ նաև կից սենյակի դռան մեջ դրված սեղանը, վրան դրված աթոռի հետ միասին (կանգնած, կամ պառկած վիճակում, ըստ տիկ-նիկավարի հասակի)։ Բակում հավաքված երեխաներին զբա-ղեցնելու համար բեմ կարող է հանդիսանալ լուսամուտի գոգը։ Ակումբային բեմերում օգտագործում են 6 կամ 8 ծալքանի շիրմաներ (նկ. 6, 7), իսկ թատերական մնայուն բեմի ձևը ցույց է տրված նկ. 8-ում։ Մեր թվարկած բոլոր բեմերը պետք է լինեն տիկնիկավարի գլխի բարձրության։ Այնպես, որ ոչ տիկնիկավարի գլուխը երևա, ոչ էլ նա ստիպ-ված լինի ձեռքը միշտ ձգված վիճակում պահել կամ տիկ-նիկը շատ ցած իջեցնել։ Բեմի լայնությունը կարող է լինել կես մետրից մինչև երկու մետր, նայած մասնակիցների քա-նակին։

## 3. ՏԻԿՆԻԿԱՎԱՐՈՒԹՅՈՒՆ




Ամեն ինչ պատրաստ է։ Հիշեցեք, որ տիկնիկները պետք է զգեստավորվեն ի-րենց միջավայրին և դերին համապատասխան։ Տիկնիկ-ները մեկը մյուսից պետք է տարբերվեն զգեստների գույներով։ Անհրաժեշտ է պահպանել ազգային տարա-զի խիստ բնորոշ գծերը։

Տիկնիկավարության ամե-նալավ կեցվածքը չլարված վիճակն է. ուղիղ կեցվածք, թևը բարձր, արմունկը քիչ ձգված դեպի կուրծքը։ Ձեռքի դաստակը քիչ դեպի առաջ։ **Քայլք.**—Քայլք ցույց տալու համար արմունկը տիկնիկի հետ միասին քիչ բարձրանում և իջնում է, միաժամանակ բազուկը և ձեռքը մերթ աջ, մերթ ձախ շրջելով։ **Վազք.**—Նույնն է, միայն արագացված։ Քայլելու և վազելու ժամա-նակ տիկնիկի հետ միասին տիկնիկավարն էլ մանր քայլե-րով շարժվում է դեպի կողք, առաջ, կամ ետ, միշտ նայելով իր և իր խաղընկերոջ տիկնիկներին։ Տիկնիկը բեմի եզրից բարձր պետք է լինի իր հասակի 3/4-ից ոչ պակաս։ **Նստե-լը.**—Նախ դաստակը կռանում է, քիչ իջնում մինչև նստա-տեղը, ապա դաստակը ուղղվում է։ Կանգնելու համար կա-տարում ենք նստելու հակառակ գործողությունը։ **Պառկելը.**—Նույնպես նստելու նման, որից հետո աջ կամ ձախ է նայում և փռվում։

## ԱՐՏԱՔԻՆ ՁԵՎԱՎՈՐՈՒՄ

Ծառ, թուփ, տուն, սեղան-աթոռ և այլն, պետք է լինեն թեթև, հատկանշական և քիչ։ Նրանք պետք է ծառայեն որ-պես օժանդակ միջոց, որպես ֆոն։ Զափից շատ լինելու դեպ-քում նրանք կարող են նսեմացնել, աննկատելի դարձնել տիկնիկների խաղը։ Գետ, լիճ, ծով ցույց տալու համար պետք է վերցնել համապատասխան չափի և գույնի կտոր և այն լույսի դեմ պահելով ծածանել։ Եթե նավակը համապա-տասխան ռիթմով շարժենք այդ «ծովի» վրայով, ապա լիա-կատար նավարկության տպավորություն կստացվի։




## 4. ԽԱՂԱՑԱՆԿ

Խաղացանկի ընտրությանն անցնելուց առաջ պետք է իմանալ, որ տիկնիկային թատրոնը սովորական, կենդանի թատրոնի կրկնությունը, կամ փոքրացրած ձևը չէ։ Տիկնիկա-յին թատրոնն ստեղծել է ժողովուրդը՝ շնորհիվ իր հնարա-մըտության, սրամտության և հմուտ ձեռքերի։ Տիկնիկային թատրոնի համար ընտրվում են այնպիսի նյութեր, որոնք նվազ հետաքրքիր, կամ բոլորովին անհնարին կլինեին մարդկանց միջոցով բեմադրելիս։ Օրինակ՝ առակներ, հե-քիաթներ, ժամանակակից երգիծական նյութեր։ Նկարի ու-




Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

նեցեք, որ խոսակցությունը պետք է քիչ լինի, գործողությունները՝ շատ, իսկ երկախոսությունները՝ կարճ և բովանդակալից: Բացի այդ, կարելի է կազմակերպել հանպատրաստից փոքրիկ, ծիծաղելի ելույթներ դպրոցում, կամ տանը պատահած դեպքերի մասին: Դերակատարներ պետք է ընտրել ըստ նրանց ձայնի (որպեսզի ձայնը համապատասխանի դերին), անկախ տարիքից և սեռից: Դերակատարները կարող են լինել մեկից մինչև ութ-տաս հոգի: Լավ կլինի կապվել լեզվի, գրականության, նկարչության, երգի դասատուների և ջոկատավարի հետ: Նրանք շատ բանով կօգնեն ձեզ:

Հիշեցնենք նաև, որ դպրոցական տիկնիկային թատրոնների համար կարելի է ձեռք բերել նաև պատրաստի տիկնիկներ Մոսկվայի Համամիութենական թատերական ընկերությունից: Հասցե՝ Москва Г-19 Пер. Янышева дом 9. Московская ФАБРИКА театральных и гримировальных принадлежностей ВТО

Տիկնիկային թատրոնի վերաբերյալ բոլոր հարցերով կարող եք դիմել «Պիոներ» ամսագրի խմբագրությանը, ինչպես նաև անձամբ ինձ՝ հետևյալ հասցեով. Երևան. Սովետների փողոց № 2. Պավլոսին:

Առայժմ այսքան: Ցտեսություն, սիրելի բարեկամներ:

Հարգանքներով՝ Ձեր Պավլոս:



## ԼԵՌՆԵՐՈՒՄ

*ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆ*

Ինչ լավ է շրջել բարձր լեռներում,
Մեկ տեսար՝ մանրիկ անձրև է մաղվում,
Մեկ տեսար՝ արև դիպավ ժեռ քարին,
Եվ ծիածանը աղեղվեց սարին:
Մի տեղ եղջերուն ժայռի կատարին,
Ականջ է դնում երգող անտառին,
Մի տեղ աղբյուրը հեքիաթ է ասում,
Ոլոր գետակն է սարն ի վար հոսում:
Իսկ մի արծիվ էլ սեգ ժայռին թառել,
Զինջ երկնքին է հայացքը հառել.
Ձնայած՝ նոր է իջել եթերից,
Բայց բարձունքներն է երազում նորից:

## ԹԹԵՆՈՒ ՎԻՇՏԸ

*ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ*

Փոքրիկ, մատղաշ թթի մի ծառ
Սուգ էր անում այգում դալար.
— Ես էլ բարով աշխարհ եկա,
Սիրուն, կանաչ շորեր հագա,
Բայց ո՛չ լինեի պտուղ տալիս,
Սև արեցին աշխարհ գալիս.
Տղաները անգութ ու չար,
Ինչե՞ր չարին մրգիս համար.
Կարծես խմբով բռնած գրազ,
Ճյուղ չթողին մնար վրաս:
Թթի համար ո՞վ կխոսեր,
Գոնե մեկը ինձ ափսոսե՞ր.
Չէ՞ որ ամռան շոգ օրերին
Զով կանեի ես բոլորին:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

# ԼՈՌԻ



(Կատակ)

ՊԱՐՈՒՅՐ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Մի օր մայրը մեր Հակոբի
Լոռի գնեց, նախշուն լոռի:
Ուզեց մաքրել փոշուց, թեփից,
Որ նաշ եփի:
Հատիկները տռուզ, կլոր,
Դես-դեն փախան գլոր-գլոր:
Ուրախացրեց դա տղային՝
Չար, անհանգիստ երեխային:
Հենց որ տեսավ,
Վրա հասավ:
Մայրիկը թե.
— Ի՞նչ կա, Հակո՛բ:
Հակոբը՝ հո՛փ.
Մի բուռ առավ
Ու դուրս թռավ:
Խաղաց, խաղաց,
Մեկ էլ հանկարծ
Փչեց խելքին մեր Հակոբի՝
Ականջի մեջ լցնել լոռի:
Շատ անգամ էր ափսե ջարդել,
Ժամացույց ու ռադիո քանդել,
Վախեցրել էր մեծ քրոջը,
Նույնիսկ խանձել կատվի պոչը,
Հազար ու մի «հանցաք» գործել,
Բայց այս մեկը դեռ չէր փորձել.
Լոռին մտավ,
Եվ... աչքը լույս.
Տաք տեղ գտավ,
Ինչու՞ գա դուրս:
Անը պատեց մեր փոքրիկին.
Ի՞նչ պատասխան տա մայրիկին:
Ցնցեց գլուխն ամբողջ թափով,
Դեմքին խփեց ձեռքի ափով,
Թռավ, թռավ, տանջվեց անձայն,
Բայց թե ջանքերն իզուր անցան:
Մի ականջը էլ չի լսում...
Տղան վախից բան չի ասում,
Իսկ միամիտ մայրը նրան
Լավ լողացրեց երեկոյան,
Լոռին ջրից ուռեց, փքվեց,
Այստեղ վախից տղան ձգվեց.
Քունը փախավ: Կեսգիշերին,
Արտասուքի ծովն աչքերին՝
Մորն արթնացրեց, խոստովանեց:
Մայրը սոսկաց.
— Տունս քանդվեց:
Առավոտյան մայրը նրան
Շտապ տանում է բուժարան:
Նայեց, նայեց բժիշկը ծեր.
— Շատ է անկարգ Հակոբը ձեր:
Տղաս, ասա,
Ակա՞նջ է սա,
Թե՞ նոր ձևի ինչ-որ ջերմոց
Եվ կամ լոռու բանջարանոց:
Արարքդ շատ է սոսկալի
Լոռին ուռել, դուրս չի գալիս.
Չի բռնվում, գործիքի տակ
Պտտվում է, ինչպես գնդակ:
Պիտի ջրեք, ջրեք էլի,
Մինչև լոռին մի օր ծլի:
Վիրահատում ինչու՞ անենք,
Ծիլը բռնած դուրս կհանենք:



Խեղճ մոր համար գործ բացվեց նոր:
Երբ ջրում էր նա ամեն օր
Առավոտյան
Ծաղիկներն ու բույսերը տան,
Տղան ականջն էր մոտ բերում
Ու իր լոբու «մարգը» ջրում:
Ծեր բժիշկն էլ զանգ էր տալիս.
— Հը՞, դեռ ծիլը դուրս չի՞ գալիս,
Փորձադաշտը լա՞վ եք ջրում,
Հո Հակոբը շատ չի՞ տխրում...

Շատ, շատ օրեր եկան, անցան,
Մինչև քույրը զվարթաձայն
Գոչեց.
— Ուռա՜, ծլեց լոբին,
Ազատությո՜ւն մեր Հակոբին:

Մայր, քույր, եղբայր նույն կեսօրին
Ներկայացան պրոֆեսորին:
Ծեր բժիշկն էլ, հուզված սաստիկ,
Հանեց լոբին չարաբաստիկ.
— Ա՛ռ քո լոբին, չարաճճի՛,
Տնկիր հողում, որ չկորչի:
Տղան ասաց
Ուրախացած.
Էլ չե՛մ անի,
Ականջիս մեջ բան չե՛մ ցանի:



Նկ. ՎԱՉՐԻԿ ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

# ԱՄՌԱՆ ԵՐԵԿՈ

ՎԱԶԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Մեղմ երեկոն է նորից
Կապույտ թևերը փռում.
Մութը ելնում է ձորից,
Բլուրները պարուրում:

Դաշտից փոքրիկ մի տղա
Հորթերին է բերում գյուղ,
Ճամփի փոշին է խաղաղ
Ելնում երկինք ինչպես ծուխ:

Հովը փչում է մարմանդ.
Մայրս գալիս է հանդից,
Եվ քրտինքն է ադամանդ
Շողում նրա ճակատին:

Լորերը քուն են մտել
Արտերում ու հանդում.
Լռություն է ամեն տեղ...
Միայն ծղրիդն է արթուն:

# ՍՆԱՀԱՎԱՏ ՎԱԽԿՈՏՊՈՉԻԿԸ

ՍԵՐԳԵՅ ՄԻԽԱԼԿՈՎ

Նկ. ՎԱԶԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

Վախկոտպոչիկը շատ գործով պետք է թռչեր հարևան քաղաքը։ Ինքնաթիռը դուրս էր գալիս երկուշաբթի օրը, ամսի 13-ին։

Ոչ մի նապաստակ սիրտ չէր անի օդ բարձրանալ, այն էլ երկուշաբթի օրը, և պատկերացնո՞ւմ եք, ամսի 13-ին։ Բայց ոչինչ անել հնարավոր չէր, տոմսը գնված էր, և թռիչքը հետաձգել չէր կարելի։

Օդանավակայանում հայտարարեցին, որ № 13-13 ինքնաթիռը թռչում է տասներեքերորդ երթուղով։

Ա՜յ քեզ փորձանք։ Սնահավատ շլդիկի տրամադրությունը լրիվ ընկավ։

Գրավելով իր տեղը ինքնաթիռում, նա նայեց շուրջը։ Բազկաթոռներից շատերը դատարկ էին։






Առաջին երկու տեղը գրաղեցրել էին Այծը և Այծիկը։ Պատուհանի մոտ նստել էր Կենգուրուն իր ձագուկի հետ։ Աջ կողմի վերջին նստարանին բազմել էր Խոզուկը։ Ամբողջ թռիչքի ընթացքում նա ուտում էր։ Խոզուկին զուգահեռ տեղ էր գրավել մի մեծ գամփռ շուն՝ Մոպս անունով։ Նա թերթ էր կարդում։

Մի քիչ այն կողմ նստել էր հայր Կատուն իր դստեր հետ։ Հենց առաջին հայացքից Կատուն դուր չեկավ Վախկոտպոչիկին։ Նա սև էր, իսկ շլդիկի կարծիքով սև կատուները «փորձանք են բերում»։

№ 13-13 մարդատար ինքնաթիռը դանդաղորեն մոտեցավ թռիչքային ճանապարհին, սլացավ վեր, ներքևում թողնելով հետզհետե փոքրացող օդանավակայանի շինությունները։

Վախկոտպոչիկը ոչ կենդանի էր, ոչ մեռած: Առաջին անգամ իր կյանքում նա ինքնաթիռ էր նստել:

— Փորձեմ մի քիչ քնել,— ինքն իրեն շշնջաց նա՝ փոքր-ինչ գլխապտույտ զգալով:

Շարժիչների հնդյունը թմրեցուցիչ էր, և նրան թվաց, թե արդեն քնած է: Որոշեց ստուգել, քնա՞ծ է, թե՞ ոչ, բայց ա՜յ քեզ զարմանք...

— Ասացեք, խնդրեմ, ո՞ր քաղաքի վրայով ենք թռչում,— հարցրեց նա Մոպսին:

— Հարցրեք անձնակազմի անդամներին,— արհամարհանքով պատասխանեց նա:

Մոտենալով դռանը, Վախկոտպոչիկը սեղմեց բռնակը և մտավ ներս: Ա՜յ քեզ զարմանք. օդաչու Արջը, թաթը բերանում, քաղցր ննջում էր: Քնած էր նաև նրա հավատարիմ օգնականը՝ կապավոր Գետնասկյուռը:

— Սա ի՞նչ է,— վախեցած բացականչեց նա,— օդանավի անձնակազմը իրավունք ունի՞ քնելու:

Վախկոտպոչիկի բոլոր ջանքերը անցան ապարդյուն: Արջը և Գետնասկյուռը խոր քնի մեջ էին:

Վախկոտպոչիկը անցավ ինքնաթիռի մյուս ծայրը և բացեց ծանրոցային խցիկի դուռը: Մի շարք ճամպրուկների մեջ նա գտավ երկու պարաշյուտ:

Ուղևորները շատ զարմացան, երբ Վախկոտպոչիկը նրանց հայտնեց ստեղծված դրության մասին և վերջում ասաց.

— Խնդրում եմ՝ առանց իրարանցման: Մեզանից երկուսը կարող են փրկել իրենց կյանքը: Ինքնաթիռում երկու պարաշյուտ կա:

— Ես, ես, ես կ-կթռչեմ, տվեք ինձ, ես,— կմկմալով ասաց Կատուն,— ինձ, տվեք ինձ, ես, ինձ...

Մնացած ուղևորները հրաժարվեցին:

Բայց հայր Կատուն արդեն որոշել էր թողնել ինքնաթիռը՝ ինչ գնով էլ լինի: Պարաշյուտը ամրացնելով մեջքին, նա ինչ-որ բան մլավեց, և դուրս ցցեց իրեն ինքնաթիռից:

Իսկ անձնակազմը դեռ քնած էր:

Ուղևորների բոլոր ջանքերը ապարդյուն անցան, անձնակազմը չէր արթնանում:

Իսկ ինքնաթիռը թռչում էր ու թռչում: Ռադիոընդունիչներում ինչ-որ ձայներ էին լսվում: Շարժիչները հանգիստ աշխատում էին:

— Ո՞վ կարող է օգտվել այս ընդունիչից,— հարցրեց Վախկոտպոչիկը:

— Ես,— ասաց Փիսիկը:

— Ա՜յ, հիմա մենք կկապվենք օդանավակայանի հետ,— ուրախ-ուրախ ասաց Վախկոտպոչիկը:

Օդանավակայանում իրարանցում էր սկսվել: № 13-13 ինքնաթիռը արդեն մի քանի ժամ ուշանում էր, փորձառու կապավոր Փայտփորիկը իզուր էր սեղմում ամեն մի կոճակ: Եթերում կատարյալ լռություն էր:

Հանկարծ լսվեց մի բարակ ձայն:

— Մյա՜ու, խոսում է № 13-13 ինքնաթիռը:





— Ի՞նչ է պատահել, ինչո՞ւ էիք լռում,— հարցրեց Փայտփորիկը:

— Ինքնաթիռի անձնակազմը քնած է:

— Իսկ ո՞վ է ընդունիչի մոտ:

— Ուղևորներից:

Փայտփորիկն իր կյանքում այդպիսի ռադիոգիր չէր ընդունել:

Օդանավակայանի պետ Արագիկը խորհրդակցության հրավիրեց օդանավակայանի պատասխանատու աշխատողներին:

— Արտակարգ իրադարձություն... № 13-13 ինքնաթիռին փորձանք է պատահել...

Բայց նա չկարողացավ իր խոսքը վերջացնել. դուռը բախեցին: Ներս ընկավ Փայտփորիկը և սեղանին դրեց մի նոր ռադիոգիր. «Որոշել եմ վայրէջք կատարել: Ասացեք, ինչպե՞ս վարվել: Վախկոտպոչիկ»:

Որոշելով իջեցնել ինքնաթիռը, Վախկոտպոչիկը նստեց օդաչուի բազկաթոռին: Արջին և Գետնասկյուռին վաղուց էին տեղափոխել ինքնաթիռի մյուս ծայրը, որտեղ նրանք հանգիստ ննջում էին: Վախկոտպոչիկը նկատեց, որ իր առջև տեղադրված են զանազան տեսակի կոճակներ, բռնիչներ, անջատիչներ, սարքեր, ժամացույցի տիպի և այլ տեսակի ամեն բան:

Փիսիկը հիանալի կերպով էր կատարում ռադիստի իր պարտականությունները:

Նրա հետ կապ էր պահպանում օդանավակայանի պետը: Ցուցումներ տալով, Արագիկը առաջարկում էր մեկ այս, մեկ այն կոճակը կամ անջատիչը օգտագործել:

Լավ չտիրապետելով ղեկավարման սկզբունքներին, Վախկոտպոչիկը սեղմում էր մերթ մեկ, մերթ մյուս կոճակը, և ինքնաթիռը մերթ գլխապտույտ էր կատարում, մերթ էլ վար սլանում:

Վերջապես եկավ վճռական պահը: Վախկոտպոչիկին շատ դուր եկավ մի մարգագետին: Ինքնաթիռը շրջան կատարեց:

Վախկոտպոչիկը երկու թաթիկներով ամուր բռնեց ինքնաթիռի ղեկանիվը:

Նա հասկանում էր, որ այդ րոպեին ամեն ինչ կախված էր իր արիությունից: Ինքնաթիռը քսվելով կեչիների կատարներին, խրվեց խոտի դեզի մեջ:

Վախկոտպոչիկը ձգվեց և... բացեց աչքերը: Ինքնաթիռը կանգնած էր գետնին, իսկ ուղևորները իջնում էին սանդուղքներով:

Վախկոտպոչիկը նստած լաց էր լինում: Ուրեմն դա երազ էր, և ինքը ոչ մի հերոսություն չէր կատարել: Վախկոտպոչիկը լաց էր լինում: Եվ այստեղ նա հիշեց նախանշանները՝ երկուշաբթին ծանր օր է, տասներեքը՝ ճակատագրական թիվ:

— Ասացե՛ք խնդրեմ, ժամը քանի՞սն է,— հարգալից հարցրեց Վախկոտպոչիկը օդաչու Արջին:

— Տասներեք զերո-զերո,— պատասխանեց Արջը:

Այդ օրվանից, ասում են, Վախկոտպոչիկը թողել է ամեն մի սնահավատություն և համարվում է ամենախելացի նապաստակներից մեկը:

Թարգմ. Ֆ. ՏՈՆՈՅԱՆԻ

# ԼՈՐԻ

ՊԼԱՏՈՆ ՎՈՐՈՆԿՈ

Հասակ եմ առել,
Լորի եմ դառել:
Մի ջարդիր դու ինձ:
Կծաղկեմ շուտով,
Մեղրատու հյութով:
Պաշտպանիր դու ինձ:

Կեսօրվա շոգին,
Կնստես շուքիս:
Խնամիր դու ինձ:
Հորդ անձրևից քեզ
Կպաշտպանեմ ես:
Միշտ ջրիր դու ինձ:

Միասին կաճենք!
Ու կկանաչենք:
Ջերմ սիրիր դու ինձ:
Իսկ՝ երբ մեծանաս,
Հեռուներ գնաս,
Մի՛ մոռացիր ինձ:

ԹԱՐԳՄ. ԵՐՋԱՆԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ



# ԴՈ-ԻՑ ՄԻՆՉԵՎ ՍԻ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

— Անդո՛, ասա դո:
— Դո
— Ջալե՛հ, ասա րե:
— Րե:
— Մերի՛, ասա մի:
— Մի:
— Ֆլորա՛, ասա ֆա:
— Ֆա:
— Սամսո՛ն, ասա սոլ:
— Սոլ:

— Օլյա՛, ասա լյա:
— Լյա:
— Մոսի՛, ասա սի:
— Սի:
— Ապա, մի պահ
Ինձ լսեցե՛ք:
Ի՞նչ ստացվեց,
Դե, ասացե՛ք:
— Դո, րե, մի, ֆա,
Սոլ, լյա, սի:

# ԳԱՐՆԱՆԱՅԻՆ

ՎԱԶԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Արփին ժպտում է երկնքից խորունկ,
Առուներն ուրախ վազում են նորից.
Ցեխոտ ոտքերով մի փոքրիկ մանուկ
Ծաղիկ է բերում ինձ մոտիկ ձորից:

Զեփյուռն էլ տատիս հետևից ընկած,
Քաշում է նրա լաչակի ծայրից.
Գառներն են գոմից դուրս թռչում հանկարծ
Աչքերում պահած կարոտը սարի:

Միրտս լցվել է արև ու ծիծաղ,
Թռչում են ճեռվից լանջերը կանաչ.
Ցողը ոտքերին գարունը չքնաղ
Մեր գյուղն է մտել ամենից առաջ:



# ՈՐՏԵ՞Ղ Է ԹԱՔՆՎԵԼ ՀԵՔԻԱԹԸ

Ա. ՄԻՏՅԱՅԵՎ

Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ

*Մի անգամ Օլյան հարցրեց իր քեռուն. «Որտե՞ղ են թաքնվում հեքիաթները։ Այնքան շատ հեքիաթներ կան, բայց ամեն անգամ նորանոր հեքիաթներ են հայտնվում։ Ա՛յ, թե կարողանայի հեքիաթներ գտնել...»*

*— Հեքիաթները միշտ չէ, որ թաքնվում են,— պատասխանեց նրան քեռին։— Երբեմն նրանք լինում են և այն ճանապարհներին, որտեղով անցուդարձ են անում մարդիկ։ Միայն թե նրանց ոչ ոք չի նկատում, ինչպես շատ հաճախ չեն նկատում լավ սունկերին։ Առողջ ամուր թնջուկը իր համար ազատ կանգնել է արևի տակ, ոչ մամուռի տակ է թաքնվում, ոչ տերևներով է ծածկվում, բայց նրան ոչ ոք չի տեսնում։*

*— Ա՜խ, ինչպե՜ս կուզեի հեքիաթ գտնել։ Հիմա մեր շուրջը հեքիաթներ չկա՞ն,— նորից հարցրեց Օլյան։*

*— Չե՛մ իմանում։ Արի փնտրենք թեկուզ մեր շուրջը։*

*Քեռին կռացավ, նայեց այն նստարանի տակ, որի վրա իրենք նստած էին, բացեց ծխախոտատուփն ու ուշադիր նայեց մեջը, հանեց Օլյայի կոշիկը, թափ տվեց նրա կրկնակոշիկները։ Հեքիաթը դեռևս չէր երևում։ Այդ ժամանակ քեռու ձեռքն ընկավ Օլյայի նկարած նկարը։ Այնտեղ պատկերված էր մի աշնանային ծառ, որը բուսել էր գետի զառիթափ ափին և կարմիր տերևները թափում էր կապույտ ջրի մեջ։*

*— Հավանաբար շատ խորն է ջուրը,— ասաց քեռին,— քանի որ այդպես կապույտ է։ Հետաքրքիր է, այնտեղ կենդանիներ ապրու՞մ են, թե՞ ոչ։ Ափին դե երևում է, որ ոչ ոք չկա։ Եթե որևէ մեկը լիներ, անմիջապես կտեսնեինք։*

*Երբ ջուրը սաղր է լինում, դժվար չէ նույնիսկ հատակի քարերը մեկ-մեկ հաշվել։ Ուրիշ բան է, երբ խորն է լինում։ Պետք է շատ ուշադիր զննել։ Եվ այսպես քեռին ու Օլյան սկսեցին նայել ջրին, որի վրա կարմիր նավակների պես լողում էին թափված տերևները։*

— Քեզ չթվա՞ց, որ հատակին ջրաբույսերի թփի մոտ մի կանաչավուն ստվեր անցավ,— հարցրեց քեռին Օլյային։

— Չէ՛, չթվաց...— պատասխանեց աղջիկը։

— Դու հապա մի լավ նայիր. ես հիմա կօգնեմ քեզ տեսնել այն, ինչ ես եմ տեսնում։ Ստվերը երևաց, բայց անմիջապես չքացավ։ Արի մի քիչ սպասենք։

Ինչ լավ արեցին, որ սկսեցին սպասել։ Ստվերը նորից երևաց։ Դա մի փոքրիկ պերկես էր։ Հիմա նրան Օլյան էլ տեսավ։ Հատակից նա մի փոքր վեր բարձրացավ, և նրա կանաչ կողքի վրա հնարավոր էր տեսնել հինգ մուգ կապույտ շերտերը, խռիկների մոտ վարդագույն լողակները և ոսկեգույն չարաճճի աչքերը։ Ի՞նչ է ուզում նա այդ անհամ ջրաբույսերից։ Հա։ Պարզ է։ Նա թաքնվում է իր ծնողներից՝ այն երկու խոշոր ձկներից, որոնք մտահոգ լողում են հեռվում։



— Այստեղ ինչ-որ բան է տեղի ունենալու,— ասաց քեռին Օլյային։— Ի՞նչ ես կարծում, այդ չարաճճին կարողանալո՞ւ է անվնաս թաքնվել իր ծնողներից։

— Ո՛չ, չի՛ կարողանալու։

Պերկեսի մոտ լողացին իր նման փոքրիկ ձկնիկներն ու հայացքները հառեցին նրան։ Ինչքան անմիտ, հիմար ձկնային դեմք ունեն նրանք։ Իսկ պերկեսը։ Նա սկսեց ջուր խմել։ Խմում է, հա խմում։ «Հասկանալի է,— շշնջաց Օլյան,— նա գրազ է բռնել բարեկամների հետ, թե կարող է շատ ջուր խմել, զուցե և գետի կեսը»։

Պարծենկոտությունը լավ բանի չի հասցնի։ Պերկեսը դեռ կես բաժակ էլ չէր խմել, որ փոքրիկ դդում դարձավ՝ կանաչ, շերտավոր ու կլորիկ։ Չէ, ձկներն այդպիսին չեն լինում։ Նույնիսկ նայող ձկնիկները սկսեցին սարսափել։ Նրանք ցրիվ եկան ու անմիջապես չքացան։

Ի՞նչ աներ պերկեսը։ Պարծենա՞ր։ Ու՞մ առաջ։ Եվ էլ ինչպես պարծենար, երբ լողալ չէր կարող։ Օրորում էր պոչը, լողակները շարժում, բայց մնում էր տեղը։

Վա՜յ, վա՜յ։ Սև քարի հետևից դուրս պրծավ մի գայլաձուկ։ Եվ ինչքան էլ մեծ է։ Ի՜նչ մեծ բերան ունի։ Արդեն պերկեսը գայլաձկան բերանումն է։

— Ամեն ինչ կորած է,—վրդովվեց Օլյան,—և պերկեսն է կորած, և հեքիաթը վերջացավ...

Բայց չէ, պարզվում է, դեռ վերջը չէ։ Գայլաձուկը քարացավ տեղում։ Լողակները չեն շարժվում սպիտակ փորի տակ։ Միայն խռիկների կիսակլոր ոսկրիկներն են մեկ բարձրանում, մեկ իջնում, մեկ էլ կանաչ աչքերն են տագնապահար չորս կողմը նայում։ Հիմա կուլ կտա պերկեսին։



— Մեղք է ձկնիկը,— ասաց Օլյան ու նայեց Բեռուն:

— Դու գետի՛ մեջ նայիր, գետի՛ մեջ,— պատասխանեց Բեռին,— ախր բաց թողեց պերկեսին, դուրս թռեց: Ճիշտ էլ արեց: Նա ոչ թե թեյ էր ուզում խմել, այլ ճաշել: Իսկ պերկեսն ինչ ճաշ, երբ լիփլեցուն է ջրով:

Եվ Օլյան ու Բեռին էլի սկսեցին նայել կապույտ ջրին, որի մոտ ծառ կար, իսկ մեջը կարմիր տերևներ:

Պերկեսը շատ վախեցավ, խցկվեց ջրաբույսերի մեջ և սկսեց կծկվել՝ ուզում էր ջուրը ետ տալ: Բայց էլ ինչպե՞ս դուրս թափեր, երբ շուրջն ամբողջ ջուր էր: Պերկեսի բանը վատ էր: Բայց ահա նա տեսավ իր ծնողներին: Ուրախացավ:

Մեծ պերկեսներն արդեն գիտեին, որ փայլածուկը որսի է դուրս եկել այդտեղ, և անհանգստացած փնտրում էին իրենց որդուն: Փոքրիկ պերկեսը լողալով կանչեց նրանց, բայց մեծ պերկեսները միայն մի աչքով նայեցին նրան ու շտապ հեռացան՝ նրանք գիտեին, որ իրենց որդին այդպիսի կլորիկ հրեշ չէ:

Փոքրիկ պերկեսը շատ տխրեց: Այդ ժամանակ ի դժբախտություն նրա մի փոքր աքերին հայտնվեց: Փոքրիկ աքերինները փշոտ են ու շատ չարաճճի: Նրանք տեսան պերկեսին և որոշեցին ֆուտբոլ խաղալ: Խեցիներից դարպասներ շինեցին, բաժանվեցին երկու խմբի ու սկսեցին պերկեսին գնդակի պես այս ու այն կողմ նետել:

— Այդպես նույնիսկ իսկական գնդակն էլ կպայթեր, ճի՞շտ է, Բեռի:— էլի խղճաց Օլյան ձկնիկին:

— Այո՛, երևում է, այդպես էլ կլինի...

Բայց ի հաճույս Բեռու և Օլյայի, ուրիշ բան պատահեց: Մի աքերին, ամենաուժեղը, այնպես խփեց պերկեսին, որ նա դուրս թռավ գետից:

Քանի դեռ պերկեսը օդում էր, ջուրը թափվեց նրա փորից: Նա գետի մեջ ընկավ իբրև սովորական ձկնիկ և որքան ուժ ուներ, ամբողջ թափով սլացավ տուն:

Բեռին ու Օլյան երկար ժամանակ նայում էին նկարված գետին, բայց այլևս ոչինչ չտեսան: Հեքիաթը, որ այս անգամ թաքնվել էր նկարի մեջ, վերջացավ:

Թարգմ.

Ռ. ՔԱԼԱՇՅԱՆ

# ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀՈՒՄՈՐ



Պիերը միշտ դպրոց էր գալիս կեղտոտ ձեռքերով: Մի օր ուսուցիչը որոշեց պատժել նրան: Նա բռնեց Պիերի աջ ձեռքից և ասաց.

— Եթե դասարանում գտնես քո ձեռքի նման կեղտոտ ձեռք, ես քեզ չեմ պատժի:

Մի պահ մտածելուց հետո, Պիերը բարձրացրեց ձախ ձեռքը և ասաց.

— Ահա, պարոն:

* * *



— Այդ ի՞նչ ես նկարում, Տոտո,— հարց է տալիս հայրիկը:

— Ձի:

— Բայց քո ձին պոչ չունի:

— Սպասիր, հայրիկ, պոչը դեռ թանաքամանի մեջ է,— պատասխանում է Տոտոն:

* * *



Թվաբանական խնդիրը լուծելիս առաջին դասարանցի Արայիկին ուսուցիչը հարցրեց.

— Եթե մայրիկը քեզ 7 հատ խնձոր տա, իսկ դու 5 հատը տաս Սուրիկին, քանի՞ հատ կմնա քեզ մոտ:

Արայիկը դժգոհ պատասխանեց.

— 5 հատը շատ է, ախր ինձ 2 հատ կմնա:

* * *

Չորրորդ դասարանցի Շուշիկը 6 տարեկան եղբորն ասաց.

— Ա՛յ, եթե դու մայրիկին չասես, որ կինո եմ գնացել, ես քեզ համար փուչիկ կգնեմ:

Գագիկը համաձայնվեց: Ընթրիքի ժամանակ, երբ մայրիկը սեղանի շուրջն էր, Գագիկը դարձավ Շուշիկին.

— Դե փուչիկը տուր, թե չէ մայրիկին կասեմ, որ կինո ես գնացել:

ՀԵՆՐԻ ԲԱԴԱԼՅԱՆ



# ԾՈՒՅԼ ՎԱՐՈՍԸ

*(ժողովրդական)*

*ԲԵՆԻԿ ՍԵՅՐԱՆՅԱՆ*

Ժամանակով Ջավախքում Վարոս անունով մի ծույլ մարդ էր ապրում: Այս Վարոսը ծնված օրից ձեռքը գործի չէր կպցրել։

— Ես որ աշխատեմ, բա ժողովրդի ցավն ո՞վ քաշի,—արդարանում էր մտքի մեջ։

Գարունը բացվեր թե չէ, ծույլ Վարոսը վարուցանքի դուրս գալու փոխարեն պիտի բռներ Աբուլ սարի ճամփան, գնար, բարձրանար սարի գագաթը, նստեր-նայեր շրջապատի հանդ ու դաշտին, զարմանքով օրորեր գլուխը.

— Պա՜հ, պա՜հ, այսքան հողերը ո՞վ պիտի վարի, ո՞վ պիտի ցանի...

Կանցներ գարունը։ Կգար ամառը։ Ժողովուրդը հնձի կելներ, իսկ ծույլ Վարոսն էլի կբռներ Աբուլի ճամփան։ Նույն տեղը նստած, կնայեր լեռան չորս կողմը ծփացող արտերի ծովին, նորից զարմանքով կօրորեր գլուխը.

— Պա՜հ, պա՜հ, այսքան արտերը ո՞վ պիտի հնձի, ո՞վ պիտի դիզի...

Էլի ժամանակ կանցներ, և ծույլ Վարոսը Աբուլի գագաթին նստած, հիմա էլ հնձած, դիզած օրանի առատության վրա կզարմանար.

— Պա՜հ, պա՜հ, այսքան օրանն ո՞վ պիտի կալսի, ո՞վ պիտի ամբարի...

Վերջապես կգար աշունը։ Երբ ամեն ինչ կալսված, տեղավորված կլիներ, ծույլ Վարոսը պարկը շալակած դռնեդուռ կընկներ, հաց կհավաքեր, որ սովից չմեռներ։

* * *

Մի կանաչ գարուն էլ, երբ մարդիկ նորից վարուցանքի էին դուրս եկել, իսկ Վարոսը բռնել էր Աբուլի ճամփան, գութանավորները, խոսքները մեկ արած, սկսեցին չորս կողմից հերթով ձայն տալ.

— Հե՜յ, ճամփորդ ախպեր, այդ ո՞ւր ես գնում։ Ջլինի՞ թե՝ Աբուլ սարը...

— Հա՛, Աբուլ սարը,—պատասխանեց Վարոսը։

— Դե, եթե Աբուլ սարի գլխին մեր ծույլ Վարոսին հանդիպես, ասա՝ ա՛յ անպիտան, վարուցանքն սկսվել է, արի գործ արա, թե չէ աշնանն աչքդ դուրս գա՝ մի կծած կորեկ չենք տալու։

— Կասեմ,—խոստացավ Վարոսն ու մտքի մեջ ուրախացավ, որ իրեն չճանաչեցին։ Հազիվ էր քիչ առաջ գնացել, երբ հիմա էլ մի ուրիշ դաշտից ձայնեցին.

— Հե՜յ, անցորդ ախպեր, թե Աբուլ սարի գլխին հանդիպես մեր ծույլ Վարոսին, ասա՝ ա՛յ անբան, վարուցանքն սկսվել է, արի գործ արա, թե չէ աշնանը հազար դուռ դիպչես, մի փշուր հաց չես ստանա։

— Սրանք էլ չճանաչեցին,—դարձյալ ուրախացավ Վարոսն ու առաջ անցավ։

Մինչև Աբուլի ստորոտը հասնելը, մի տասը—քսան տեղից այսպես ձայն տվեցին նրան։

Վարոսն էլ չհամբերեց։

— Ա՛յ ժողովուրդ,—խոսեց զայրացած,—բա դուք ուրիշ ցավ չունե՞ք...

— Ծույլ Վարոսից էլ մեծ ցա՞վ,—պատասխանեցին բոլոր կողմերից։



Նկ. ՍԱՐԳԻՍ ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

# ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐ ՓՈՔՐԻԿ ԱԼԻԿԻ ՄԱՍԻՆ

ԱՐՏԱՇԵՍ ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

## ԵՐԿՈՒ ԴԵՊՔ

Շատ զարմանալի տղա է մեր Ալիկը։ Ոչ մի ոտանավոր կամ հեքիաթ մինչև վերջ չգիտե։ Բայց ամեն մեկից իմացած մի քանի տողն էլ անընդհատ կրկնում է տեղի-անտեղի։

Այ, թեկուզ երեկ։ Նստել էր իր փոքրիկ սեղանի առջև ու նկարում էր։ Մատիտը այնքան սուր էր սեղմում թղթին, որ վերջիվերջո ծայրը ջարդվեց։

Վազելով եկավ պապիկի մոտ, թե.

— Պապիկ ջան, վերցրո՛ւ այս մատիտը. սրիր, իսկ ես գնամ քուջուջ անեմ, գլուխս պահեմ...

Այ քեզ զարմանալի տղա...

* * *

Կամ՝ մի ուրիշ դեպք։ Ալիկը խաղում էր սենյակում, իսկ մայրիկը խոհանոցում ճաշ էր եփում։ Եվ հանկարծ սենյակից լսվեց մի ուժեղ շրխկոց։ Մայրիկը անհանգստացած շտապ սենյակ մտավ, և ինչ...

Ալիկը նստել էր հատակին, հախճապակե կոտրված բաժակի երկու կտորները աշխատում էր նորից իրար կպցնել ու որովհետև չէր կարողանում, ու կտորները կրկին բաժանվում էին, լաց էր լինում։

— Մի լա,— ասաց մայրիկը։

Ալիկը շարունակում էր լաց լինել։

— Դո՞ւ ես կոտրել բաժակը։

— Ես չեմ կոտրել,— շարունակելով լաց լինել, մրմնջաց Ալիկը։ Հետո մի փոքր մտածեց ու արցունքների միջից ժպտալով ասաց.

— Ես եմ կոտրել, չեմ ուրանում... Կացին չունես ծառը կտրես...

— Դե, ինքներդ ասեք, ի՞նչ կապ ուներ կոտրված հախճապակե բաժակը, Հովհաննես Թումանյանի «Չարի վերջը» հեքիաթի երկու տողերի հետ։

Պարզապես զարմանալի տղա է Ալիկը։

## ՀԱՅՀՈՅԵԼ ՉԻ ԿԱՐԵԼԻ

Թեև փոքրիկ է Ալիկը, բայց բնավորության մի շատ լավ գիծ ունի։ Երբեք, ոչ մի առիթով որևէ մեկին չի վիրավորում, ոչ մի կոպիտ խոսք չի ասում։ Իսկ եթե նոր բառ է լսում, անմիջապես հարցնում է մայրիկին.

— Կարելի՞ է այս բառը օգտագործել։

Մի անգամ Ալիկը լսում էր իր քույրիկին, որը նրա համար Հովհաննես Թումանյանի «Բզեզի դպրոցն» էր արտասանում։

Հետո Ալիկը սկսեց արտասանել։ Կարծես ամեն ինչ լավ էր գնում։ Նույնիսկ քույրիկը գոհ էր։ Ալիկը շարունակում էր արտասանել։

«Այ տղա, է՜յ, չեն հայհոյի,

Տզզան...»

Եվ հանկարծ Ալիկը այստեղ կանգ առավ, դարձավ մայրիկին ու հարցրեց.

— Մամ, բա կարելի՞ է ասել «...հիմար, անասուն...»

— Դա ոտանավորի մեջ է, և բզեզն է ասում մշակին, դրա համար էլ կարելի է,— ժպտալով ասաց մայրիկը։

## ՄԵԿ ՕՐՈՒՄ ՄԵԾԱՑԱՎ

Առավոտյան Ալիկը հանկարծ գրկեց մայրիկին, համբուրեց ու ասաց.



— Մայրիկ, որ ես մեծանամ, դու էլ փոքրանաս, քեզ համար կարմիր ու դեղին փուչիկներ կառնեմ։



Բոլորը ծիծաղեցին։ Եվ ամենաշատը՝ Սուրիկը։ Դե, իհարկե, ծիծաղելի է, չէ՞։ Ալիկին թվում է, թե եթե ինքը մեծանա, մայրիկը փոքրանալու է։

Բայց երեկոյան պարզվեց, որ Ալիկն ամեն ինչ հասկանում է։ Հյուրեր էին եկել։ Մայրիկը նրանց պատմեց, թե Ալիկը որոշել է իր համար փուչիկներ գնել։

— Ալիկ ջան, — կրկին հարցրեց մայրիկը, — որ դու մեծանաս, ես էլ փոքրանամ, ինձ համար փուչիկներ կգնես, չէ՞...

— Ոչ, մայրիկ ջան, — պատասխանեց Ալիկը, — որ մեծանում են, էլ չեն փոքրանում։

— Վա՜յ, ուրեմն դու մեկ օրում մեծացել ես. հա՞, որ հասկանում ես արդեն, — ծիծաղեց մայրիկը, գրկեց ու համբուրեց Ալիկին։

Ալիկը նայեց Սուրիկին։ Քիչ էր մնում, որ ասեր թե Սուրիկն է իրեն բացատրել... Բայց ոչինչ չասաց։

Ախր նա այնքան էր ուզում շուտ մեծանալ...

## ԻՆՉՈՒ՞

Անցյալ տարի Ալիկը, իր քույրիկ Սաթիկի հետ ամառանոց էր գնացել Սևանի շրջանի Լճաշեն գյուղը՝ մորաքրոջ մոտ։ Նրան այնքան էր դուր գալիս Սևանը, որ միշտ խնդրում էր.

— Մորաքույր ջան, թույլ տուր Սուրենի հետ գնամ լճի մոտ, է՜լի...

Մորաքույրը չէր թողնում։

— Չի կարելի, — ասում էր նա։ Հանկարծ լիճը կընկնես։

— Իսկ որ ընկնեմ, ի՞նչ կլինի։

— Կխեղդվես, — ասում էր մորաքույրը։

— Իսկ որ խեղդվեմ, ի՞նչ կլինի, — հարցնում էր Ալիկը։

Մորաքույրը փորձում էր բացատրել, բայց Ալիկը համարյա ոչինչ չէր հասկանում։ Նա իմացավ միայն մի բան, որ խեղդվելը շատ տխուր, շատ վատ բան է, որ ավելի լավ է մարդ չխեղդվի, քան թե խեղդվի։

Մի քանի օր անց, մորաքույրն ինքը Ալիկին ու Սուրիկին տարավ լճի ափը։ Կապույտ ու գեղեցիկ էր Սևանը։ Ինչ որ հայելի։ Ոչ մի ալիք չկար։ Մի քանի մարդ ինչ-որ ցանց էին դուրս բերում ջրից։

— Այն ինչե՞ր են այնպես փայլփլում, — խայտող ձկները տեսնելով հարցրեց Ալիկը։

— Ձկներ են, — պատասխանեց մորաքույրը։

— Բոլորն էլ ջրի՞ց հանեցին։

— Այո, — ասաց մորաքույրը։

— Խեղդվել է, — տխրեց Ալիկը նայելով անշարժ ձկներից մեկին

— Այո, — ասաց մորաքույրը։

— Մայրիկին չի լսել, ջրի մեջ է ընկել ու խեղդվել, չէ՞, — հարցրեց Ալիկը։



— Ոչ, ի՞նչ ես ասում, — ծիծաղեց մորաքույրը։ — ընդհակառակը ձկնորսը նրան դուրս է բերել ջրից, դրա համար է խեղդվել։

Ալիկը լռեց ու երկար մտածում էր։ Ինչ հետաքրքիր է, չէ՞, եթե Ալիկը ջուրն ընկնի՝ կխեղդվի, եթե ձկնիկը ջրից դուրս գա, կխեղդվի։ Ա՜յ քեզ զարմանալի բան։

— Ինչու՞, — հարցրեց Ալիկը...

## ԽԱՂԸ

Բոլորն էլ գիտեն այն խաղը, որի մասին պատ-

մեյու եմ։ Օրինակ. Կարինեն մոտենում է Լուսիկին ու ասում.

— Լուսիկ, ասա լոր։

— Լոր,— ասում է Լուսիկը։

— Ուտես սալոր,— ուրախ-ուրախ պատասխանում է Կարինեն, և ընկերուհիները ծիծաղում են։

Կամ՝

— Կարինե, ասա՝ գանձ։

— Գանձ։

— Ուտես տանձ։

Հետաքրքիր խաղ է։ Հաղթում է նա, ով ավելի շատ է կարողանում նման բառեր գտնել։ Այդպիսի բառեր շատ գիտի նաև Ալիկի քույրիկը՝ Սաթիկը։

— Ալիկ,— դիմում է նա եղբորը,— ասա՝ գիրք։

— Գիրք,— ասում է Ալիկը։

— Ուտես միրգ,— ծիծաղում է Սաթիկը։

Ալիկը նեղնում է.

— Այդ ի՞նչ խաղ է, որ,— ասում է նա,— ես ամպի չափ կարող եմ ասել...

— Դե ասա։

— Ասա՝ միվան։

— Միվան.

— Ուտես դիվան։

Սաթիկը բացատրում է, որ Ալիկը սխալ է խաղում։ Որ դիվանը նախ՝ հայերեն բառ չէ, որ հետո առաջին բառը էլ պետք է իսկական բառ լինի, ոչ թե հենց այնպես։ Թե չէ ի՞նչ է «միվան»։

— Հասկացա՞ր,— հարցնում է վերջում Սաթիկը։

— Հասկացա,— պատասխանում է Ալիկը։— Դե հիմա՝ բորգ։

— Բորգ։

— Ուտես գորգ։

Սաթիկը բարկանում է ու այլևս չի խաղում Ալիկի հետ։ Ալիկը տխրում է ու մի անկյունում նստած մտածում է, թե ինչպիսի բառեր ասի, որ ճիշտ լինեն, որ Սաթիկը խաղա իր հետ։

Ու ասում են՝ մինչև այսօր էլ մտածում է։ Չգիտեմ, ճիշտ է դա, թե ոչ։

# ՈՒՐԻՇ Ի՞ՆՉ Է ՀԱՐԿԱՎՈՐ

ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ծույլիկ ճպուռն իր համար
Թռվռում էր ամեն օր.
—Ջա՜ն, ամառ է: Ջա՜ն, ամառ,
Թող շոգ լինի, ի՞նչ կա որ:

Պիտի գնամ ես ճամբար,
Հեռու չէ, ա՛յ, Ծաղկաձոր,
Ու քեֆ անեմ ինձ համար,
Ուրիշ ի՞նչ է հարկավոր:

—Լա՛վ,—հարցնում եմ,—դպրոցում
Դու պարտք չունե՞ս, այս տարի...
Եվ ճպուռը վախեցավ,
—Ի՞նչ պատահեց, վե՛ր պարի:

Ձայն չի հանում. ա՛յ քեզ բան,
Հիշեց դպրոց ու դասեր,
Ոչ Ծաղկաձոր, ոչ ճամբար,
«Երկուս»—ի տերն ի՞նչ աներ:

Իսկ ես կասեմ՝ սովորի՛ր
Եվ պարտքդ տուր, ի՞նչ կա որ.
Ծույլին ամռան օրերին
Ուրիշ ի՞նչ է հարկավոր...

Նկ. ԴԱՆԻԵԼ ՍԱՐԳՍՅԱՆԻ

# Պատմում է լույսի ճառագայթը

ՀԱԿՈԲ ԶԱՔՄԻՆՅԱՆ



Գագիկին արթնացրին լուսամուտից ներս ընկած արևի շողերը: Նա ուզեց դիտել շրջապատը, բայց ճառագայթները ասեղների պես ծակծկում էին նրա աչքերը:

— Օֆ այս ի՞նչ է,— աչքերը տրորելով տրտնջաց Գագիկը:

— Ի՞նչ է, մեզ չե՞ս ճանաչում: Մենք լույսի ճառագայթներ ենք, այն սուրհանդակները, որ գալով հեռավոր աստղային աշխարհներից, կարող են շատ հետաքրքիր բաներ պատմել աստղերի և Արեգակի հեքիաթային բնույթի մասին, նրանց լուսատու մակերևույթի, ջերմաստիճանի, քիմիական կառուցվածքի և ուրիշ շատ ու շատ բաների մասին: Բայց մենք միայն սուրհանդակներ չենք: Գալով կենսատու Արեվից՝ մենք կյանք ենք բերում Երկրին, նրա բուսական ու կենդանական բազմաբովանդակ աշխարհին, ստեղծում մարդկության համար այնքան խիստ անհրաժեշտ էներգիայի տարբեր աղբյուրներ:

— Եթե ուզում ես, մենք մի փոքր կպատմենք մեր մասին:

Գագիկը լարված ուշադրությամբ լսում էր ճառագայթների պատմությունը:

«Իհարկե, դու մեզ միշտ պատկերացնում ես ոսկեգույն շողերով,— շարունակեցին իրենց պատմությունը ճառագայթները,— բայց մենք միշտ այդպիսին չենք, երբ անցնում ենք որոշ թափանցիկ մարմիններով, բազմերանգ գույներ ենք ստանում: Այ, օրինակ, երբ անցնում ենք ջրի կաթիլների միջով, ցրվում ենք վերածվելով տարբեր գույների: Ապա դուրս նայիր և ամեն ինչ քեզ համար պարզ կլինի»: Այդ պահին լողացող մի ամպ չկարողանալով իր հուզմունքը պահել, արտասվեց, կաթիլներ դարձավ և թափվեց ցած: «Ինչ գեղեցիկ ծիածան է» — մրմնջաց Գագիկը: Այո, դա մենք ենք բազմերանգ զգեստներով: Բայց դու բոլորիս չես տեսնում, այստեղ կարող ես տարբերել մեր հիմնական յոթ գույները՝ կարմիրը, նարնջագույնը, դեղինը, կանաչը, երկնագույնը, կապույտը, մանուշակագույնը, որոնք հաջորդում են իրար և կազմում գեղեցիկ ու նախշուն ծիածանի գոտի: Մեզնից ամենաերկար ալիքավորները կարմիր գույնից դուրս են գտնվում: Նրանց անվանում են ինֆրակարմիր, իսկ ամենակարճ ալիքավորները ընկած են մանուշակագույնից դուրս և ուլտրամանուշակագույն անուն են կրում: Դու, իհարկե, սովորական աչքով չկարողացար տեսնել մեր կարճահասակ և երկարահասակ անտեսանելի եղբայրներին, այդ պատճառով մենք ստիպված ենք քեզ նկարագրել նրանց միքանի շատ հետաքրքիր հատկությունների մասին, որոնք մեծ չափերով օգտագործվում են գիտության մեջ և առօրյա կյանքում: Դե, ուրեմն, լսիր. Նախ պետք է ասենք, որ ինֆրակարմիր ճառագայթների ամենաբնորոշ հատկությունը նրանց ջերմային և քիմիական ազդեցությունն է, այդ պատճառով նրանք օգտագործվում են ժողովրդական տնտեսության այն ճյուղերում, ուր անհրաժեշտ են այդ հատկությունները: Այսպես օրինակ՝ ինֆրակարմիր մեր եղբայրները կարճ ժամանակամիջոցում չորացնում են ներկված դետալները, նորակառույց շենքերը, հատուկ նպատակների համար օգտագործվող փայտը և այլն: Հաջողությամբ տաքացնում են բնակարանները, զարմանալի չթվա, եթե քեզ ասենք, որ ձմեռային պայմաններում տաքացնում են սպորտ հրապարակներում, ստուդիաներում, փողոցներում հավաքված մարդկանց: Գագիկ, իսկ դու երբևէ տեսե՞լ ես ջեր-

մոց կամ ջուր տաքացնելու արեգակնային «տաք արկղի» տիպի ջեռուցիչ։ Այստեղ երկու դեպքում էլ ինֆրակարմիր ճառագայթները մեծ դեր ունեն, նրանք իրենց ջերմությունը տալիս են ջերմոցի բույսերին կամ տաքացվող ջրին։ Պետք է ասենք, որ ինֆրակարմիր մեր եղբայրները շատ համարձակ են. գիշերային մութն ու խավարը ոչինչ չարժեն նրանց համար, նրանք համարձակորեն թափանցում են խավարը և անտեսանելին դարձնում տեսանելի։ Նրանց այս անգնահատելի հատկությունը մարդը օգտագործում է շատ տեղերում։ Իսկ դու գիտե՞ս,— դիմեցին լույսի ճառագայթները Գագիկին,— այնպիսի լուսանկարչական թիթեղների մասին, որոնք զգայուն են ինֆրակարմիր ճառագայթների նկատմամբ։ Ահա նրանց միջոցով գիշերային մթության մեջ նկարահանում են աչքի տեսողությունից թաքնված հեռավոր մարմիններ, անտեսանելի աստղեր, թույլ պայծառության մշուշներ, գիսաստղեր և այլն։ Նրանց թափանցման այդ հատկությունը կարող են շատ գաղտնիքներ հայտնաբերել։ Պատկերացնում ես, թե որքան հետաքրքիր է, երբ քո ստացած նամակը կարդում են առանց ծրարը բացելու, կամ հագնում ես այնպիսի ակնոց, որ անտեսանելին տեսանելի է դառնում։ Ուր ասես չեն լինում, ինչ ասես չեն անում մեր ինֆրակարմիր եղբայրները։ Մտիր տարբեր արտադրություններ և դու կտեսնես, թե ինչպես նրանք օգնում են նյութերը տեսակավորելիս, պլաստմասսայի և այլ նուրբ շինվածքների վնասվածքներն ու անտեսանելի բծերը հայտնաբերելիս, լաքի, ներկերի և շատ ուրիշ արտադրություններում օգտագործվելիս։

Կենսաբանության մեջ նրանք հնարավորություն են տալիս ուսումնասիրել պարզունակ օրգանիզմներ, իսկ բժշկության մեջ՝ ներքին հիվանդությունները։

Այժմ մի քանի խոսք մեր կարճահասակ ուլտրամանուշակագույն եղբայրների մասին։ Սրանք բարձր ջերմություն են սիրում, այդ պատճառով, նրանք շատ խիստ բազմանում են, երբ 3 հազարից ավելին է ջերմությունը։ Այդ պատճառով նրանք, երբ գալիս են վիթխարի ջերմություն ունեցող Արեգակից, այնքան հզոր են, որ կարող են ճանապարհին ոչնչացնել կենդանի ամեն ինչ։ Բարեբախտությունը այն է, որ նրանք նախքան Երկրին հասնելը, համարյա ամբողջությամբ կլանվում են Երկրի մթնոլորտի կողմից, և շատ քչերին է հաջողվում հասնել մինչև Երկրի մակերևույթը։ Հիշու՞մ ես, Գագիկ, անցյալ տարի պիոներական ճամբարում ինչպես արևայրուկ ստացար, դա հենց ուլտրամանուշակագույն եղբայրներիս արարքն էր։ Հը, դու մռայլվում ես բայց այդ հարցում Գագիկ դու՛ էիր մեղավոր, չէ՞ որ սևանալու նպատակով այրում էիր մաշկդ։ Ուլտրամանուշակագույն մեր եղբայրները շատ կազդուրիչ և բարերար ազդեցություն են գործում կենդանիների և մարդկանց օրգանիզմի վրա, եթե դա կատարում են բժշկի խորհուրդով։ Նրանք, ոչնչացնելով մի շարք հիվանդություններ առաջացնող մանրէներ, կանխում և բուժում են մի շարք հիվանդություններ, ինչպես օրինակ պալարախտը, ռախիտիկ երեխաներին և այլն։ Ուլտրամանուշակագույն ճառագայթները բարերար ազդեցություն են ունենում գյուղատնտեսական կենդանիների և թռչունների վրա, հատկապես ձմեռային շրջանում։ ՍՍՌՄ-ի մի շարք կոլտնտեսություններում և սովխոզներում ուլտրամանուշակագույն ճառագայթների լուսավորումով բարձրացվել է կենդանիների և թռչունների մթերատվությունը։ Մեր ուլտրամանուշակագույն եղբայրները օգտագործվում են հնէաբանության մեջ մինչպատմական ժամանակներից մնացած կենդանիների և բույսերի հետքերի ուսումնասիրման համար, հնէագիտության մեջ՝ մակագրությունների և հնագույն ձեռագրերի ուսումնասիրության, տարբեր հին փաստաթղթերի և նկարների իսկությունը հաստատելու համար և այլն։

Սիրելի Գագիկ, ներիր, որ մեր լեզուն բավական բարդ է և քեզ հասկանալի շատ բաներ չկարողացանք հայտնել, բայց դեռ մենք կհանդիպենք բարձր դասարաններում և դու ավելի մանրամասն կիմանաս մեր հատկությունների և կիրառությունների մասին»։

Այսպես ավարտեցին Լույսի ճառագայթները իրենց պատմությունը։



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



*Նկ. Հրաչիկ Գաբուչյանի*

# ԿԱՏԱՂՈՒԹՅԱՆ ԴԵՄ

*ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ*

*(Բժիշկ)*

Այս դեպքը տեղի է ունեցել 75 տարի առաջ: Էլզասի շրջանի Մեյսենհեյմ գյուղաքաղաքում: Բակում խաղում էր Իոզեֆ անունով մի փոքրիկ տղա: Այդ ժամանակ նրան մոտեցավ պոչը կախ գցած, գլուխը թեքած, մոլորված մի շուն: Միամիտ տղան մոտեցավ, որ հաց տա: Բայց շունը հարձակվեց և կծեց տղային:

— Շունը կատաղած է, օգնեցե՛ք,— գոչեցին անցորդները:

Ժողովուրդը հավաքվեց: Տնից դուրս եկավ Իոզեֆի մայրը: Կանչեցին տեղական բժշկին: Փոքրիկ տղայի վերքը լվացին, կապեցին: Քիչ հետո Իոզեֆը նորից ծիծաղում էր, խաղում: Բայց ծնողները, բարեկամները ու հարևանները մտահոգված էին: Նրանք գիտեին, որ մի քանի օրից հետո տղան պետք է հիվանդանա կատաղությամբ և... մահանա:

— Երեխային պետք է շտապ Փարիզ տանել, այնտեղ է ապրում նշանավոր բժիշկ Լուի Պաստերը, նա կփրկի քո երեխային:

Քիմիայի պրոֆեսոր Լուի Պաստերը, որը Ֆրանսիայում հայտնի էր որպես մետաքսի որդերի հիվանդության, խաղողահյութի ու գինին փչացնող միկրոբների դեմ պայքարող մի մարդ, հենց նոր փորձերը վերջացրել և գնում էր հանգստանալու, երբ զանգը հնչեց:

— Այստե՞ղ է ապրում պրոֆեսոր Լուի Պաստերը,— հարցրեց սևազգեստ կինը:— Ես եկել եմ Էլզասի շրջանից: Իմ տղային կատաղած շուն է կծել: Դուք կատաղության դեմ դեղ ունեք, խնդրում եմ փրկեք իմ որդուն:

Պրոֆեսորը նայեց կնոջ աչքերին և հասկացավ, որ խոսում էր մի մայր, որի տղան դատապարտված էր մահվան: Պաստերն ինքն արդեն 63 տարեկան էր և ուներ երեխաներ:

— Ճիշտ է, ես գտել եմ կատաղության դեմ պայքարելու դեղ, բայց ոչ մի մարդու դեռ չեմ սրսկել:

— Ես համաձա՛յն եմ,— ասաց մայրը—առաջին անգամ սրսկեք իմ որդուն:

Կար ժամանակ, երբ Ֆրանսիայում գոյություն ուներ սարսափելի մի օրենք՝ կատաղությամբ հիվանդ մարդկանց այրում էին խարույկի վրա կամ գնդակահարում: Մինչև Լուի Պաստերի հետազոտությունները, ոչ ոք չգիտեր, թե ինչպես է տարածվում այս հիվանդությունը և ինչպես պետք է պայքարել նրա դեմ:

Լուի Պաստերը իր աշակերտների հետ պարզեց, որ կատաղությամբ հիվանդանում են շները, գայլերը և այլ կենդանիներ, որոնք կծում և թքի միջոցով վարակում են մարդկանց:

Կծելուց 15—30 օր հետո մարդը հիվանդանում է: Ունենում է ուժեղ ցնցումներ, հետո սկսում են թուլանալ ոտքերն ու ձեռքերը: Ջուր տեսնելիս հիվանդը սաստիկ վախենում է, դրա համար էլ այս հիվանդությունը կոչվում է ջրավախություն:

Լուի Պաստերը վերցրեց կատաղած շան ուղեղից մի կտոր և նրանից ստացած հյութով 12 օր շարունակ սրսկեց առողջ շանը: Հետո սրսկված շանը պահեց կատաղած շան մոտ: Բայց ինչքան էլ կատաղած շունը կծեց, սրսկված շունը չհիվանդացավ:

Գաղտնիքը պարզված էր:

Եվ ահա Լուի Պաստերը այդ հյութից սրսկեց նաև փոքրիկ Իոզեֆին և փրկեց նրա կյանքը:

Մեծ քիմիկոս և բակտերիոլոգ Լուի Պաստերը իր մեծ գյուտով փրկեց մարդկությանը կատաղության հիվանդությունից: Այժմ ամեն քաղաքում գոյություն ունի Պաստերյան կայան, որտեղ անհրաժեշտության դեպքում սրսկում և փրկում են մարդկանց:

# ՀՐԱՇՔՆԵՐ ԵՎ ՀՈՒՅՍԵՐ ՎԱՃԱՌՈՂՆԵՐԸ

## Իսկ դուք սնահավա՞տ եք

Շատերը համոզված են, թե «13» թիվը նրանց «երջանկություն» է բերում, նրանց դժբախտություն: Հին հռոմեացիները ամեն ամսի 13-րդ օրը դժբախտ օր էին համարում, իսկ խորհրդավոր ընթրիքի մասին ավանդությունը (այն ընթրիքի, որին մասնակցում էին տասներեք մարդ, և նրանցից առաջինը սեղանից դուրս գալուն պես մահանում) նպաստեց այդ սնոտիապաշտության պահպանմանը:

Հրթիռային շարժիչների այս դարում անգլիական ոչ մի ինքնաթիռ 13-րդ համարով նշված բազկաթոռ չունի, անգլիական շոգենավերի մեջ այդ համարով նշանակված ոչ մի նավասենյակ չկա:

Ճռռ եկած ագռավը, կոտրված հայելին, խաչաձև դրված դանակները, անկողնի վրա դրված գլխարկը, սենյակում բացված հովանոցը, այդ բոլորը իբրև թե դժբախտություն են բերում:

Ձեր սիգարեթը մի վառեք այն լուցկուց, որից արդեն երկու հոգի վառել են իրենց գլանակները, դա կարող է դժբախտություն բերել: Բուրերի դեմ պատերազմելու ժամանակ երեք անգլիացի զինվոր անզգուշաբար ծխել են թշնամու մոտակայքում: Առաջին առկայծումից հետո բուրը հրացանն ուղղել է նրանց կողմը, երբ երկրորդ զինվորն է վառել ծխախոտը, նա նշան է բռնել, իսկ երրորդը չի հասցրել նույնիսկ ծուխը մի անգամ ներս քաշել, գնդակը կպել է ուղիղ նրա դեմքին: Այսպես է ստեղծվել այս նախապաշարմունքը:

## Աստղագուշակությունը ան[illegible]երկարատև հիվանդություն է

Հեռավոր միջնադարում գոյություն է ունեցել այսպես կոչված մի «գիտություն»՝ աստղագուշակություն: Աստղերի դասավորությամբ աստղագուշակները որոշում էին մարդկանց բախտը, գուշակում հազար ու մի դիպվածներ:

Այսօր էլ դեռ Փարիզում ապրում են 6 հազար աստղագուշակներ: Ամեն օր անց է կացվում 100 հազար կոնսուլտացիա: Իսկ ամբողջ Ֆրանսիայում 30000-ից ավելի աստղագուշակներ կան:

Աստղագուշակները հաստատում են, թե իրենք կարող են կանխատեսել ապագան: Բայց նրանցից և ոչ մեկը 1938 թվականին չէր գուշակել, որ 1939 թվականին պատերազմ է սկսվելու: Նրանցից ոչ մեկը 1957 թվականին չգուշակեց, որ Դը Գոլը կրկին իշխանության գլուխ է կանգնելու:

Աստղագուշակները քանի՜ անգամ հայտարարել են աշխարհի կործանման թվականը՝ 992, 1179, 1186, 1395, 1651, 1715, 1819, 1872, 1911, 1938, 1949 և... 5552:



## Իրերը [illegible] են [illegible] վրա

Երիտասարդ խոհարուհի Թերեզա Յ-ն [illegible] մեջ տակնուվրա արեց Սեն-Ժան-դե-Մորիեն լեռնային փոքրիկ քաղաքի կյանքը: Հարազատները, բարեկամները ու ծանոթները առանց հոգնելու հիանում էին Թերեզայի արտակարգ ընդունակություններով: Նրա ներկայությունը սենյակում բավական էր, որ իրերը հիպնոսվեին, ա[illegible]օջախը սկսեր մարել, իսկ պարոն Յ-ի (ցավագարի ամուսնու) մաշիկները վազեին առաստաղի վրայով:

Իմանալով այդ մասին, շվեյցարացի Իոսա Վիսկոն մարտի հրավիրեց այդ վհուկին:

Մանրամասն հարցուփորձ անելուց հետո պարզվեց, որ շվեյցարացին գործ ունի մտավոր խանգարում ստացած մի կնոջ հետ:

Նա հարցրեց.

— Տիկին, դուք կարո՞ղ եք մի որևէ առարկա շարժել տեղից, ձեր ամբողջ ուշադրությունը կենտրոնացնելով նրա վրա:

— Ես այդ բանում լիովին համոզված եմ: Երբ և որտեղ ցանկանամ, կարող եմ:

— Կարո՞ղ եք այդ բանն անել իմ և ուրիշ վկաների ներկայությամբ: Ես միլիոն ֆրանկ կնվիրեմ Սեն-Ժան-դե-Մորիենի կարիքների համար, եթե ձեր փորձը հաջող անցնի: Դուք համաձա՞յն եք:

— Պատրաստեցեք ձեր միլիո՜նը, պարոն Վիսկո:

Սակայն ոչինչ տեղի չունեցավ, բացի տիկին Յ-ի նյարդային ուշաթափությունից:

Այսպես, մարդկային թուլությունները շահագործողների այդ բոլոր կախարդական գործողությունները խորտակվում են բնագիտական մտքի, տրամաբանության ու փորձի առաջ:

Ռուսերենից թարգմ.

Ա. ՂՈՒԿԱՍՅԱՆ



## ՌԱԴԻՍՏՈՐԻ ՓՈԽԱՐԵՆ՝ ՊԱՍՏԱՌ, ՎԱՌԱՐԱՆԻ ՓՈԽԱՐԵՆ՝ ԿԱԶՈՒՅՔ

...Այդ սենյակը ոչ մի բանով չի տարբերվում ձեր տեսած հազարավոր սենյակներից: Բայց եթե նույն սենյակը մտնեք ցուրտ ձմռանը, դուք խսկույն ենթուստ կզգաք հաճելի ջերմություն:

«Այստեղ զարմանալի ոչինչ չկա,— կանցնի ձեր մտքով,— տանտերերը բարեխղճորեն տաքացրել են սենյակը վառարանով կամ այլ ջեռուցման միջոցներով: Բայց մի՛ շտապեք եզրակացություն անել. այդ սենյակում ո՛չ վառարան կա դրված, ո՛չ ջեռուցիչ:

Սենյակի տերը տեսնելով ձեր զարմանքը՝ ժպտադեմ մոտենում է պատի վրա ամրացված տախտակին և չխկացնում է անջատիչը: Որոշ ժամանակ անց, սենյակը զգալիորեն ցրտում է: Անջատիչը նորից է չխկում և նորից սենյակն սկսում է տաքանալ... Ինչումն է բանը: Ձեռքերդ հպում ես պաստառապատ պատին, շիրմային, սեղանի ոտ-

չերտ ռեաինից. յուրաքանչյուր շերտն ունի 3 մմ. հաստություն: Միջին շերտը հատուկ է և իր բաղադրության մեջ ունի ացետիլենի մրի գծիկներով բաճակություն: Այդ շերտի միջով անցնում են պղնձյա լարեր, որոնք էլեկտրական հոսանքի տակ ջերմանում են և սենյակը տաքացնում 25—40°:

Արտաքին շերտերին տրված է գեղեցիկ տեսք և նրանց ծառայում են որպես հուսալի մեկուսիչներ: Պաստառ—վառարանը կարելի է ամրացնել նաև պատերի վերևի մասերում, առաստաղին և ուզած գույներով ներկել. ներկը չի խանգարում, որ այն սենյակն՝ այդպես հավասար ջերմություն:

Ջեռուցման այս նոր ձևը առանձնապես նպատակահարմար է բնակարանների անկյուններում, տեղական վառելանյութերից զուրկ շրջաններում ինչպես և հարավային տաք երկրներում, ուր ձմեռը

Ինչպես կարելի է վայրի խնձորենին, տանձենին կամ բալենին ազնվացնել և նրանցից ստանալ ավելի լավ ու համեղ մրգեր:

Դրա համար ծառի կեղևը կտրում են ռուսերեն „T" տառի ձևով: Այդ կտրվածքում տեղադրում են լավ տեսակի խնձորի ծառից կտրած կտրոնը և վերքի նման խնամքով կապում: Որպես վիրակապ մասնագետները սովո-

րաբար օգտագործում էին մաուզաշ լոբենու կամ ռանու կեղևը:

Հիմա արդեն այդ նպատակի համար օգտագործում են պոլիմերիական ժապավեն, որը շատ առաձգական է. փաթաթելիս այնպես է ամուր կպչում ծառի ճյուղին, որ այլևս խոնավություն և օդ չի անցնում պատվաստի ներսը: Այդ ժապավենը հարմար

է նաև նրանով, որ չի խանգարում կտրոնի մեծանալուն և հաստացման աճելուն: Իսկ պոլիմերիական ժապավենի քանդելը հեշտ է ավելի, քան կեղևից պատրաստած վիրակապը: Այդ նպատակի համար արտադրվում են հատուկ ժապավեններ: Բայց ծառերի պատվաստման համար կարող են օգտագործել նաև մագնիտաֆոնի հին ժապավենը:

## ՄԱԳՆԻՏԱՖՈՆԻ ԺԱՊԱՎԵՆԻՑ



Այգեպաններ, մի ոչնչացրեք մագնիտաֆոնի հին ժապավեններն և օգտագործեցեք ծառեր պատվաստելիս:



Կակտուսը հունական բառ է, որ նշանակում է չորադիմացկուն, հյութալի:

## ՄԱՔՈՒՐ ՕԴ... ԱՎՏՈՄԱՏԻՑ

Այնքան էլ հեշտ չէ մաքուր օդ շնչելը մեծ քաղաքում, որտեղ կան հազարավոր գործարաններ:

Մինթե չի կարելի փողոցում ստանալ մի կում մաքուր օդ, ինչպես մի բաժակ գազով ջուրը: Այդ մասին սկսեցին մտածել մի խումբ ֆրանսիական ինժեներներ:

Եվ ահա Փարիզի փողոցներում երևան եկան հատուկ կրպակներ: Գցելով պահանջված դրամը ավ-

քերին և լինչ․ բոլորն էլ տաք են և մեղմ ջերմութիւն են արձակում:

Պարզվում է, որ այդ սենյակի պատերի պատառը, շիրմաճ և անգաճը շինված են հատուկ նյութից, որը պատրաստել են Մոսկվայի Լոմոնոսովի անվան Նուրբ քիմիական տեխնոլոգիայի ինստիտուտում:

Այդ նյութը բաղկացած է երեք կարճատև է լինում:

Շուտով մենք կազատվենք վառելիքի ու մետաղի ճակատական ծախսերից, էժան էլեկտրաէներգիան կփոխարինի մեր տները: Վառարանների և ռադիատորների փոխարէն մեր բնակարանները կպարզեն ջերմութիւն արձակող գեղեցիկ պատառներ ու կահույքը, իսկ օդն էլ կմաքրվի ծխից ու մրից.

# ՌԵՆՏԳԵՆՅԱՆ ԼՈՒՍԱՆԿԱՐ ԱՄԲՈՂՋ ՀԱՍԱԿՈՎ

Սովորական ռենտգենյան ապարատով կարելի է նկարահանել մարդու մարմնի մի մասը միայն: Իսկ ի՞նչ անել այն ժամանակ, երբ բժշկին անպայման հարկավոր է հիվանդի մարմնի ամբողջական լուսանկարը: Դրա համար պետք է հիվանդին նկարահանել մոտ 25 անգամ, որը երկար ժամանակ է խլում և հիվանդի վրա վատ է անդրադառնում: Վերջերս Կիևի ռենտգենոլոգիական ինստիտուտում արդեն կիրառվում է Մ. Ս. Օվոշնիկովի ստեղծած ռենտգենյան նոր ապարատը, որ միանգամից մարդուն նկարահանում է ամբողջ հասակով: Ծանոթանանք այդ ապարատի հետ:

Ռենտգենյան խողովակի վրա ամրացված է հատուկ ճեղքավոր փականակ, որը կարող է մարմնի ամբողջ երկարությամբ շարժվել:

Անցնելով առանցքով պատկերները ուրվագծվում են էկրանին, որոնցից էլ հավարող տեսապակու միջոցով անցնում են ժապավենի վրա և նկարահանվում: Մարդու օրգանիզմի ամբողջական ռենտգենյան լուսանկարը պատրաստ է. այժմ բժիշկը արագ և անսխալ կարող է գտնել հիվանդի վնասված տեղը:



Հայրենիքը Մեքսիկան է: Կան կակտուսների տարբեր տեսակներ, որոնք ունեն 0.5-ից մինչև 15 մետր բարձրություն: Ինչպես բոլոր ծաղկավոր բույսերը, այնպես էլ կակտուսները ընդունակ են ծաղկման և պտղաբերման: Սակայն ինչո՞ւ նրանք չունեն տերևներ: Այդ բացատրվում է նրանով, որ կակտուսներն աճում են անապատային պայմաններում, որտեղ անձրևներ հազվադեպ են լինում: Որպեսզի նրանք հարմարվեն պայմաններին, պետք է ջրի գոլորշիացումը քիչ կատարվի: Դրա համար էլ կակտուսի վրա տերևի փոխարեն աճում են փշեր, իսկ տերևի դերը կատարում է կանաչ ցողունը: Կակտուսները տալիս են գեղեցիկ ծաղիկներ: Օձանման ցերուս տեսակի ծաղիկները լինում են ոսկեգույն, սպիտակ և բացվում են երեկոյան ժամը 10-ից մինչև գիշերվա ժամը 3-ը: Գիշերվա մթության մեջ ծաղիկները նմանվում են աստղիկների: Զուր չէ, որ կակտուսների այդ տեսակը կոչվում է «Գիշերային թագուհի»: Ծաղիկները արտակարգ մեծ են, խոշոր ափսեի չափ: Մյուս տեսակները նույնպես ունեն գեղեցիկ ծաղիկներ, սակայն նրանք բացվում են ոչ թե գիշերը, այլ ցերեկը:

Կակտուսի արմատները տարածվում են հողի վերին շերտում, որ տեղումների ժամանակ արագ կլանեն ջուրը: Կակտուսները ունեն տնտեսական կարևոր նշանակություն: Օգտագործվում է կակտուսի և՛ ցողունը, և՛ արմատը, և՛ ծաղիկները, և՛ պտուղը: Կակտուսների ցողունից պատրաստում են սիրոպ, գինի, պահածոներ, կաուչուկ, ներկեր: Արմատները և ծաղիկները օգտագործվում են բժշկության մեջ, չորացրած ծաղիկները և արմատային հիվանդությունները բուժելու համար: Կակտուսի պտուղը օգտագործվում է թարմ և վերամշակված: Այդ ամենի շնորհիվ կակտուսները ուշադրության են արժանանում ոչ միայն սննդային բույսերի խնամողների, այլև բուսաբանների կողմից:



տամատի մեջ, անցորդը շնչում է մաքուր օդ, որը հարուստ է թթվածնով:

## ԱԼՈԵ

Ալոեն անապատային, չորադիմացկուն բույս է: Առաջին անգամ հանդիպել է մոտ 2000 տարի առաջ, Պաղեստինի այգիներում: Ալոեն ծառանման է: Իր հայրենիքում նրա բարձրությունը հասնում է 20 մետրի: Տերևը հաստ է, մսալի, մաշկը պատած է մոմաշերտով, որը բույսը չի տալիս որ ջրի գոլորշիացումը արագ կատարվի: Ալոեն ծաղկում է հազվադեպ՝ տարին մեկ անգամ: Ծաղիկն ունի դեղնա-կարմրավուն գույն, հոտը առաջ է բերում գլխացավ: Չնայած դրան, ալոեն մեծ կիրառում ունի բժշկության մեջ: Տերևահյութը օգտագործվում են տարբեր տեսակի ներքին հիվանդությունների բուժման համար: Հայտնի ակնաբույժ պրոֆեսոր Ֆիլատովը ալոեի տերևահյութը օգտագործել է նույնիսկ աչ․․․ բուժման համար: Ալոեի որոշ տեսակներից պատրաստում են մանրաթել, որից հյուսում են գորգեր և ջրադիմացկուն պարաններ:

ՍԻՐՈՒՇ ՎԱՐԴԱՆՅԱՆ

# ԴԵՂԱՏՈՒՆԸ ԲՆՈՒԹՅԱՆ ԳՐԿՈՒՄ

Դեղաբույսերը մեզ շրջապատում են ամենուրեք: Նրանք իրենք են օգնության գալիս մեզ, երբ հարկավոր է դադարեցնել վերքից հոսող արյունը, մեղմացնել հազը, թարմանալ հոգնածությունից և այլ դեպքերում:

Որպես արյունահոսությունը դադարեցնող դեղաբույս շատ վաղուց հայտնի է «եզան լեզուն»: «Եզան լեզուն» աճում է ամեն տեղ և շատ օգտակար է ճանապարհորդին: «Եզան լեզուն» օգտագործում են նաև այրվածքների ժամանակ, միջատների կծածների դեպքում և թարախային վերքերը բուժելիս:

Հովվապարկի թարմ տերևները նույնպես կանգնեցնում են արյունահոսությունը: Հովվապարկն ունի սպիտակ ծաղիկներ, ցողունը շրջապատված է եռանկյունաձև, պայուսականման տերևիկներով, որի պատճառով էլ բույսը ստացել է հովվապարկ անունը:

Արյունահոսությունը կանգնեցնող հատկություն ունեն նաև ջրափերին աճող տաքուկի թարմ տերևները: Ջրային տաքուկն ունի նեղ երկար տերևներ: Ծաղիկները կանաչավուն են և վարդագույն, դասավորված են ողկույզաձև: Սերմերն ունեն կծու համ:

Հենց ճանապարհին էլ թրջած մաքուր բամբակով, շղարշով կամ կտորով կարելի է սրբել վերքը, ապա լվանալ «եզան լեզվի», ջրային տաքուկի կամ հովվապարկի տերևը, ապա վերքը փաթաթել տերևով և կապել:

Հաճախ դուք էքսկուրսիայի ժամանակ մրսում եք և սկսում հազալ: Այդ դեպքում, եթե համապատասխան դեղեր չունենք, կարող եք օգտագործել խոճկորիկի տերևների եփվածքը: Խոճկորիկն ունի կարճ և հաստ կանաչամոխրագույն ցողուն, դեղին զանգակաձև ծաղիկներ, որոնց բացվելը ազդարարում է գարնան գալուստը:

Գարնան վերջին նրա կանաչ տերևներն առանց կոթի հավաքում են և չորացնում մաքուր սպիտակ շորի վրա, հով տեղում:

Ձմռանը և աշնանը հազը դադարեցնելու համար կարելի է դիմել խնդատի՝ արջընկույզի օգնությանը:

Խնդատն ունի երկար, թավշյա, մոխրա-կանաչավուն տերևներ: Դեղին-ոսկեգույն ծաղիկները դասավորված են ցողունի վերին մասում և հիշեցնում են մոմը, այստեղից էլ բույսը ստացել է «Թագավորական մոմ» անունը: Չորացնելու համար հավաքում են նոր ծաղկած ծաղիկները: Չոր ծաղիկները պահպանում են իրենց դեղին գույնը: Օգտագործում են եփվածքի ձևով:

Հազը դադարեցնելու համար շատ նպատակահարմար է օգտագործել տուղտի արմատը: Տուղտը ունի սպիտակ, մանուշակագույն կամ կարմիր փիփերթանման ծաղիկներ, որոնք ծաղկում են հուլիս և օգոստոս ամիսներին: Նա ունի ձվաձև տերևներ: Եղեգնաձորի շրջանում տուղտը հայտնի է շահմահլամ՝ շահի դեղ անունով:

Տուղտի արմատը սպիտակ գույնի է և ձեռք տալիս, շնորհիվ լորձանման նյութի, կպչում է: Արմատները հավաքում են ուշ աշնանը, երկու տարեկան բույսից, լվանում սառը ջրով, ապա քերում վրայի կեղևը և չորացնում 35° ջերմության տակ: Տուղտի թարմ արմատից դեղ կարելի է պատրաստել հենց դաշտում: Լվացած և քերած հինգ գրամ արմատը պետք է լցնել հարյուր գրամ սառը ջրի մեջ: Կեսից մեկժամվա··· ընթացքում ջուրը ստանում է բաց դեղին գույն: Հեղուկը քամել մառլայով և օգտագործել:

Մրսելու հետևանքով հաճախ կարող է բարձրանալ ձեր ջերմությունը: Այդ դեպքում կարելի է օգտագործել քրտնաբեր դեղեր: Ամենալավ քրտնաբեր միջոցը դա ազնվամորու՝ մալինայի պտուղների թեյն է: Հունիսի վերջերին և հուլիսին որպես քրտնաբեր միջոց կարելի է օգտագործել նաև լորենու ծաղկաբույլերի թեյը:

ՍՈՆՅԱ ՄԿՐՏՉՅԱՆ



# ՆՈՐ ՏՈՒՆ



ԱՐՇԱԼՈՒՅՍ ՄԱՐԳԱՐՅԱՆ

Իմ տիկնիկը տուն է ստացել
Մեր սենյակի դեմ դիմաց,
Այդ լուրը ո՞նց չեն իմացել
Խաղընկերներն իմ սիրած։
Ունի բաղնիք և խոհանոց,
Ե՛վ դահլիճ, և՛ ննջարան,
Էլ չեն կարող վազել փողոց
Բադիկներս շորորան։
Ու դահլիճում այս ընդարձակ
Մեծ ճաշկերույթ պիտի տամ։
Փոքրիկ շլդիկ, կազմիր ցուցակ,
Թե քանի մարդ պիտի գան։
— Կգաք կոկիկ ու սանրված,
Տե՛ս, խայտառակ չանեք ինձ.
Հյուրեր ունեմ հրավիրված,
Մոտիկ բոլոր շենքերից։
Փիսի՛կ, արի մի քիչ օգնի,
Հոգիս ելավ, տնաշեն,
Այսքան մթերք հերիք կանի՞
Թե որ բոլորը ճաշեն։
— Մյաո՜ւ,— ասաց հպարտորեն
Սևուկ փիսիկը նրան,—
Ջհերիքեց, ես կբերեմ
Երկու մկնիկ անպայման...







Նկ. ՎԱԶԳԻՆԻ ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Նկ. ՊԵՏՐՈՍ ՄԱԼԱՅԱՆԻ*








# ՇԱԽՄԱՏԱՅԻՆ ԷՏՅՈՒԴՆԵՐ

Հ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

## ԷՏՅՈՒԴ 1

*(Այս էտյուդը «ՑԻԴԵ» ամսագրի թեմատիկ մրցանակաբաշխության ստացել է I մրցանակ)*



Սպիտակները սկսում և հաղթում են։

## ԷՏՅՈՒԴ 2



Սպիտակները հաղթում են։


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ. ԿԱԹՈՒՂԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Տ. (պատասխանատու քարտուղար). ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41

*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։*

*ՎՖ 01749 Պատվեր 896. Տպաքանակ՝ 8200։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 6/VII 1961 թ. ՀՍՍՀ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։*

Գինը 20 կ.։




## ԼԱԲԻՐԻՆԹՈՍ «ՖՈՒՏԲՈԼԱՍԵՐ»



Ձեզանից ո՞վ կարող է գտնել ֆուտբոլի դաշտ տանող միակ ճանապարհը:

*Կազմեց՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆԸ*

## ՈՎՔԵ՞Ր ԵՆ...



*Նկարը և առաջարկը Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ*

# ՖՈԿՈՒՍԻ ԳԱՂՏՆԻՔԸ

*Բաժինը վարում է*

*ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀԱԿՈԲՅԱՆԸ*

*(Հայկական ՍՍՌ ժողովրդական արտիստ)*

## ԵՐԿՐՈՐԴ ՖՈԿՈՒՍ

### ՀԱՆԳՈՒՅՑԸ ՕԴՈՒՄ

Վերցնում եք գունավոր երկու թաշկինակ և զույգ ձեռքերով բռնած մոտենում հանդիսականներին: Ապա հանգիստ շարժումով միացնում եք ձեռքերն իրար և վեր նետում թաշկինակները: Օդի մեջ բռնում եք թաշկինակներից մեկը... և հանդիսականի աչքի առաջ կատարվում է հրաշք՝ թաշկինակները կապված են հանգույցով:

Այս հետաքրքիր ֆոկուսը կատարելու համար հարկավոր է ունենալ ռետինե մի փոքրիկ օղակ և երկու վառ գույներով ներկված թաշկինակ, որոնք նախապես պետք է կախված լինեն սեղանից:

Նախքան թաշկինակներին մոտենալը՝ ռետինե օղակը հագցընում եք ձեր ցուցամատի և միջնամատի ծայրերին (տես Նկ. 1), վերցնում եք սեղանից աջ ձեռքով մի թաշկինակը, ձախով մյուսը և ցուցադրում հանդիսականներին (տես Նկ. 2): Աջ ձեռքի թաշկինակը միջնամատով և ցուցամատով բռնում եք այնպես, որ ռետինե օղակը ոչ երևալի և ոչ էլ դուրս թռչի մատներից: Ապա թաշկինակի երկու ծայրերը մոտեցնելով՝ աջ ձեռքի բթամատն էլ մտցնում եք օղակի մեջ և մի վայրկյան շուռ գալով դեպի աջ՝ արագորեն մատներից սահեցնում եք ռետինե օղակն ու հագցնում թաշկինակների ծայրերին (տես Նկ. 3): Նույն պահին թաշկինակները վեր եք նետում և օդում բռնելով պատահած թաշկինակը՝ ապացուցում, որ իրոք թաշկինակները հանգուցված են: Այս ֆոկուսը հատկապես պահանջում է կատարողից ճկունություն և արագաշարժություն, դրա համար նախապես պետք է լավ վարժվել:



20 կ.

# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ



ԱՎՏՈԲՈՒՍ

ԳՈՀԱՐԻԿ ԹՈՄՈՒՆՅԱՆ

(Լենինական, 2-րդ դաս. աշակերտուհի)



ԳԱՐՈՒՆԸ ԳՅՈՒՂՈՒՄ

ՌԱՖԱՅԵԼՅԱՆ ԱՇՈՏԻԿ

(Աղինի շրջ. Շիրակավան, 2-րդ դաս. աշակերտ)



ՁԿՆՈՐՍ

ՏՈՆՈՅԱՆ ՄԱՐՏԻՆ

(Լենինականի Մայակովսկու անվան դպրոցի 7-րդ դաս. աշակերտ)